1917 № 10—*Մարտի 12* ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *ռուբլի*, կէս տարուան 3 *ռուբլի*. *Արտասահման*, տարեկան 5 *ռ.*, կէս տարուան 3 *ռ.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ**՝ *Թիֆլիս, Արտասաղեան հրապար. № 7.* Հեռախօս № 29.

*Փոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаւ ․еръ". Tiflis, Rédaction du journal „Hamoavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ**՝ *տողին* 10 *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերի*

*Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.*

Երկրորդ տարի **ՀԱՄԲԱՒԱԲԵՐ** Երկրորդ տարի

*ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՄԵԾ ՅԱՂԹԱՆԱԿ

*Լայնածաւալ Ռուսաստանի բազմացեղ և բազմալեզու ազգաբնակութիւնը հրճւում է։*

*Բռնակալական շղթաները փշրուեցին ճնշող, սպրդկացնող քաղաքական կազմը խորտակուեց. ազատութեան հողմը հնչեց. իրաւակարգի արշալոյսը բացուեց. ամենքն սկսեցին ազատ շնչել, դուրս գալով խեղդող մթնոլորտից։*

*Փետրուարի 28-ին կատարուեց յեղաշրջումը պետական կազմի, որ, ինչպէս մի հսկայական մեծութիւն, բայց փտած արմատով ժայռ, ընկաւ, խորտակուեց, տեղի տալով նոր կեանքի, նոր քաղաքական կազմի։*

*Այդ օրը այսուհետև պէտք է համարուի ամենանշանաւոր պատմական օր, Ռուսաստանի քաղաքական պատմութեան մէջ կը կազմի ոսկէ էջեր։*

*Հին րէժիմը ամբողջ ազգաբնակութեան համար ստեղծել էր մի դժոխք. նրա անարդար հալածանքներից ազատ չէին ոչ անհատներ, ոչ ազգեր, նա ընթացել է արիւնալի ճանապարհով. ամեն մի ազգի լաւագոյն զաւակներն են եղել նրա զոհերը։*

*Ամեն մի փորձ՝ բռնութեան կապանքներից ազատուելու համար սարսափներ է առաջ բերել՝ տաժանակիր աշխատանքներից սկսած մինչև կախաղանը։ Հին րէժիմից տանջւում էր և գիւղացին, և քաղաքացին, և անհատներ, և ամբողջ ազգութիւններ։*

*Սակայն ազատութեան տենչը չէր մարում ոչ հալածանքներից, ոչ ահաբեկումից. քայլ առ քայլ ազատու-*

*թեան գաղափարը զարգանում էր և տարածւում շրջանէ շրջան, ազատութեան անհրաժեշտութեան պահանջը զգում էին և մտաւորականները, և բանւորները, և գիւղացին. վերջապէս զգաց և զինուորականութիւնը։*

*Միայն Ռուսաստանի հին ռէժիմի անհեռատես և կոյր պետական ղեկավարներն էին, որ չկարողացան նախատեսնել, որ նրանց բերդերը, բռնակալական միջոցները չեն կարող իրերի բնական ընթացքը փոխել, որ պատմութեան անիւը միշտ խորտակել է իւր ոյժերի տակ բոլոր խոչընդոտներն ու արգելքները։*

*Այդ բնական օրէնքը նորից փայլուն կերպով արտայայտուեց, երբ ժողովրդի ընտրեալները՝ Պետական Դումայի անդամները Պետրոգրադում Տաւրիկեան Պալատից բարձրացրին ազատութեան դրօշակը և, յենուելով ժողովրդի ու զօրքի ոյժերի վրայ, յայտարարեցին մահ հին ռէժիմին, որ և ընկաւ, երբ զրկուեց իւր միակ յենարանից՝ սւիններից, որոնց ոյժով պահպանում էր իւր գոյութիւնը։*

*Ներկայումս մայրաքաղաքներից սկսած մինչև գաւառները հաստատւում է ժամանակաւոր կառավարութիւն՝ հիմնուած ռամկավար՝ դեմոկրատիկ սկզբունքների վրայ. ամեն մի վարչական հիմնարկութիւն մաքրւում է հին ռէժիմի ձևերից, կարգերից և նրա մթնոլորտում սնուած պաշտօնեաներից։*

*Մօտ ապագայում սպասւում է սահմանադիր ժողովը* (учредительное собраніе), *որին կը մասնակցեն բոլոր ազգերը և ժողովրդական խաւերը իրենց ներկայացուցիչների միջոցով, որ պիտի որոշի Ռուսաստանի հաստատուն քաղաքական կազմը։*

*Իսկ մինչև այդ ժողովը, ժամանակաւոր բարձր կառավարութիւնը առայժմ հռչակել է կրօնական, ազգային, քաղաքացիական սահմանափակումները, յայտարարելով իրաւունքների հաւասարութիւն. ամենքը՝ թէ գիւղացի, թէ քաղաքացի և թէ զինուոր ստացել են քաղաքացու կոչում։*

*Այդ պատուաւոր կոչումն միաժամանակ ամեն մէկի վրայ բնականաբար դնում է պարտականութիւն ամենայն կերպ աջակցել, որ նոր իրաւակարգը չխանգարուի և աւելի ամրապնդուի։*

*Այդ աջակցութիւնը պէտք է արտայայտուի, առաջին՝ որ մոռացութեան տրուին հին պրովակացիոն կառավարութեան ստեղծած դասակարգային և ազգային անբարեացակամ յարաբերութիւնները, հաշիւները, հակակրութիւնները և հաստատուի իսկական համերաշխութիւն. երկրորդ՝ որ ամեն տեղ պահպանուի կարգ ու խաղաղութիւն և կեանքը ընթանայ բնական ձևով, որպէսզի բարձր կառավարութիւնը կարողանայ առաջ տանել իւր ստեղծագործական քաղաքական գործունէութիւնը, մանաւանդ պատերազմը, յաղթելու թշնամուն. անհրաժեշտ է այդ յաղթանակը, որպէսզի կորչի հին ռէժիմի ուրուականի սպառնալիքը, և երրորդ՝ որ ամեն մի քաղաքացի և ազգ իրեն համար սրբազան պարտք համարի աջակցելու նոր կառավարութեան ամեն մի գործում, չխնայելով ոչ մի միջոց՝ բարոյական և նիւթական։*

*Ժողովրդական իրաւակարգը պէտք է պահպանի և պաշտպանի ինքը ժողովուրդը յանուն իւր սեփական և իւր ապագայ սերունդների բարօրութեան։*

*Մասնաւորելով մեր խօսքը հայերի մասին անկարելի է անտես առնել, որ հայ ազգի բաղդը, նրա ապագան կրկնակի է կախուած Ռուսաստանի նոր իրաւակարգից։ Հայ ազգի մի հատուածը ապրում է Ռուսաստանում. նա վայելում է հաւասար քաղաքական իրաւունքներ միւս քաղաքացիների հետ և ամենայն վստահութեամբ էլ պէտք է սպասի և ազգային ինքնուրոյնութիւն ունենալու. իսկ միւս հայկական հատուածի, տաճկահայերի համար էլ Ռուսաստանի պետական կազմի յեղաշրջումը մեծ գրաւական է, որ նրանք էլ, պատերազմի յաջող վերջանալուց յետոյ, կունենան յանձին Ռուսաստանի նոր կառավարութեան զօրեղ և հաւատարիմ պաշտպան՝ ազատելու Հայաստանը Օսմանեան բռնակալութիւնից և մտցնելու երկրում վաղուց փափագած ինքնավարութիւն։*

*Ահա թէ ինչու հայ ժողովուրդը աւելի պէտք է ձգտի և ցանկանայ, որ Ռուսաստանում հաստատուի և ամրապնդուի նոր իրաւակարգը և ռուսական քաջարի զօրքը դաշնակիցների հետ միասին տանի կատարեալ յաղթութիւն թշնամու դէմ։*

*Այս նպատակի համար կանգ չպէտք է առնել և ոչ մի զոհաբերութեան առաջ։*

*Մեր քաղաքական գիտակցութիւնը և հեռատեսութիւնը յանուն հենց մեր բազմաչարչար ազգի շահերի պէտք է թելադրեն, որ մեր ոյժերի գործադրելը այս մեծ պատմական օրերին Ռուսաստանի համար իրաւունք է տալիս յուսալու և սպասելու, որ մեր ազգային խնդիրն էլ մի օր, գուցէ շատ մօտ ապագայում, ստանայ իւր լուծումը, և մենք ազատ Ռուսաստանին կից տեսնենք և ազատ Հայաստան։*

*Ս. Յարութիւնեանց*

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳԻՐ

*Մարտի 8-ին Մոգիլևում Ժամանակաւոր Կառավարութեան որոշմամբ բանտարկուեց Նիկոլայ Թագաւորը և ուղարկուեց Ցարսկոյէ Սելո, ուր թագուհու հետ միասին համարւում են բանտարկուած։*

---

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

*Ռուսաստանի վերջին յեղափոխութիւնը այնքան ցնցում առաջ բերաւ քաղաքակիրթ աշխարհում, որ պատերազմական գործողութիւնները երկրորդական բնոյթ առան։*

*Միջագետքում սակայն անգլիացիներն ու ռուսները եռանդուն կերպով առաջ են գնում. անգլիացիք գրաւեցին Բարիզանօ գիւղն ու Բակուբա քաղաքը, իսկ ռուսները մտնում են Մուսուլի շրջանը։*

Ֆրանս-անգլիական ճակատում, ֆրանսիացիք անցան Սոմմի վրայ, Գամից և Շոնից բազմաթիւ աւաններ գրաւելով։ Ֆրանսիացիք մինչև 20 գիւղ և աւան գրաւեցին մի օրուայ ընթացքում։

Անգլիացիք էս շարունակում են այդ ճակատում յառաջանալ. նրանք գրաւեցին մօտ 40 գիւղ և աւերեցին գերմանական շատ խրամատներ։

Բալկանեան ճակատում Մոնաստիրի մօտ հրաձգութիւն և տեղական կռիւներ են տեղի ունենում։ Սոեննոյից հիւսիս դաշնակիցները առան 440 գերի և գրաւեցին թշնամու 1,500 մետր խրամատները։

— Մարտի 9-ին ֆրանսացիք Մոնաստիրի շրջանում ձեռք բերին 9 գնդացիր և 1,200 գերի։

## ՆՈՒԷՐՆԵՐ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Համբաւաբերի տարածման համար, տիկ. Եղիսաբեթ Մ. Սարգսեան Միրզոյեանից ստացուեց 25 օրինակի գին 100 ռուբլի։

## ԹԱԳԱՒՈՐ ԿԱՅՍԵՐ ՆԻԿՈԼԱՅ II-Ի ՀՐԱԺԱՐՈՒԵԼԸ ԳԱՀԻՑ

### ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՀՐՈՎԱՐՏԱԿ

—o—

Ողորմութեամբն Աստուծոյ, Մենք, Նիկոլայ Բ. Կայսր Համայն Ռուսիոյ, Ցար Լեհաստանի, Մեծ Իշխան Ֆինլանդիայի և այլն և այլն, յայտարարում ենք Մեր բոլոր հաւատարիմ հպատակներին.

Արտաքին թշնամու դէմ մղուող մեծ կռուի օրերին, որ գրեթէ ձգտում է մեր հայրենիքը ընկճել, Աստուծուն հաճելի եղաւ նոր ծանր փորձութիւն ուղարկել Ռուսաստանին։ Սկսուած ժողովրդական ներքին խռովութիւնները սպառնում են աղէտաբեր անդրադառնալ յամառ կռուի շարունակելուն։ Ռուսաստանի վիճակը, մեր դիւցազնական բանակի պատիւը, ժողովրդի բարիքը, մեր թանկագին հայրենիքի բովանդակ ապագան պահանջում է, ինչ էլ լինի, պատերազմն հասցնել յաղթական վախճանի։ Անողոք թշնամին լարում է վերջին ուժերը, և արդէն մօտ է ժամը, երբ մեր քաջարի բանակը մեր փառաւոր դաշնակիցների հետ միասին կարող կը լինի վերջնականապէս ընկճել թշնամուն։

Ռուսաստանի կեանքի այս վճռական օրերին Մենք խղճի պարտք համարեցինք դիւրացնել Մեր ժողովրդի սերտ միութիւնը և ժողովրդական բոլոր ուժերի համախմբումը շուտափոյթ յաղթութիւն տանելու և Պետական Դումայի հետ համաձայն Մենք բարւոք համարեցինք հրաժարուել Ռուսաց Պետութեան Գահից և բառնալ Մեզնից Գերագոյն իշխանութիւնը։

Չկամենալով անջատուել Մեր սիրեցեալ Որդուց, Մենք Մեր ժառանգութիւնը յանձնում ենք Մեր Եղբայր Մեծ Իշխան Միքայէլ Ալէքսանդրովիչին։ Օրհնում ենք Նրա Ռուսաց Պետութեան Գահը բարձրանալը։ Պատուիրում ենք Մեր Եղբօրը վարել պետութեան գործերը լիակատար և անխախտ միաբանութեամբ ժողովրդի ներկայացուցիչների՝ օրէնսդրական հաստատութիւնների հետ այն հիմունքներով, որ կը սահմանեն նրանք, այդ բանի համար տալով անդրժելի երդում,

Ցանուն ջերմագինս սիրեցեալ հայրենիքի՝ կոչ ենք անում հայրենիքի բոլոր հաւատարիմ զաւակներին կատարելու իրենց սրբազան պարտքը առ հայրենիքը, հնազանդուելով Ցարին համաժողովրդական փորձութիւնների ծանր վարկեանին, և օգնելու նրան ժողովրդի ներկայացուցիչների հետ միասին Ռուսաց Պետութիւնը տանել հանել յաղթութեան բարօրութեան և փառքի ճանապարհը։ Թող Աստուած օգնի Ռուսաստանին։

Իսկականի վրայ Նորին Կայսերական Մեծութեան սեփական ձեռքով ստորագրուած է՝

ՆԻԿՈԼԱՅ

2 մարտի, ժամի 5-ին, 1917 թուին, Պսկով։

Վաւերացրեց՝ կայսերական դրան նախարար, գեներալ-ադիւտանտ կոմս Ֆրեդերիկս։

—o—

## ՄԵԾ ԻՇԽԱՆ ՄԻԽԱՅԻԼ ԱԼԷՔՍԱՆԴՐՈՎԻՉԻ ՈՐՈՇՈՒՄԸ

Ծանր բեռ է դրուած Ինձ վրայ Իմ Եղբօր կամքով, որը յանձնել է Ինձ Համառուսական Կայսերական Գահը անօրինակ պատերազմի ժողովրդական խռովութիւնների ժամանակ։ Ոգեւորուած ամբողջ ժողովրդի հետ միասին մի մտքով, որ ամենից բարձրը մեր հայրենիքի բարիքն է, Ես հաստատապէս վճռեցի այն դէպքում միայն ընդունել Գերագոյն իշխանութիւնը, եթէ այդ կը լինի մեր մեծ ժողովրդի կամքը, որին պատկանում է իր ներկայացուցիչների միջոցով սահմանադիր ժողովում համաժողովրդական ձայնատուութեամբ Ռուսաց Պետութեան կառավարութեան եղանակ և նոր հիմնական օրէնքներ սահմանելը։

Ուստի, հայցելով Աստուծու օրհնութիւնը, խնդրում եմ Ռուսաց Պետութեան բոլոր քաղաքացիներին՝ հնազանդուել Ժամանակաւոր Կառավարութեանը, որ ծագել է Պետական Դումայի ձեռներէցութեամբ և ունի լիակատար իշխանութիւն, մինչև որ կարելոյն չափ կարճ ժամանակում ընդհանուր, ուղիղ, հաւասար և գաղտնի ձայնատուութեան հիմունքով գումարուելիք սահմանադիր ժողովը կառավարութեան եղանակի մասին իր տալիք վճռով արտայայտի ժողովրդի կամքը։

Իսկականի վերայ ստորագրուած է՝ ՄԻԽԱՅԻԼ

——

## ԳԵՐԱԳՈՅՆ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ ՀՐԱՄԱՆ

Հրամայում եմ զօրքի բոլոր պետերին՝ աւագներից մինչև կրտսերները ներշնչել և բացատրել բանակի ու նաւատորմղի զինուորներին, որ երկու ակտերի յայտարարումից յետոյ նրանք պէտք է հանգիստ կերպով սպասեն ռուս ժողովրդի կամքի արտայայտմանը և նրանց սրբազան պարտքն է, հնազանդ մնալով օրինական պետերին, պաշտպանել հայրենիքը ահարկու թշնամուց և իրենց սխրագործութիւններով աջակցել մեր դաշնակիցներին այս անօրինակ կռւում։

Գեներալ-ադիւտանտ ՆԻԿՈԼԱՅ

——

## ՀՐԱՄԱՆ ԳԵՐԱԳՈՅՆ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ

1717 թ. 3 մարտի № 1

Կառավարական սենատի հրամանով, տրուած 1917 թ. 2 մարտի Նորին Կայսերական Մեծութիւն Թագաւոր Կայսր Նիկոլայ II-ից, Ես նշանակուած եմ Գերագոյն Հրամանատար։

Կովկասեան բանակի հարազատ ու գերապանծ զօրքեր, Ես բախտաւոր եմ, որ ձեզնից չեմ բաժանւում։—Սրտով ու մտքով Ես միշտ կը լինիմ ձեզ հետ։

Բարձրագոյնս Ինձ հաւատացած իշխանութեամբ Ես նշանակում եմ գեներալ ինֆանտերի Իւդենիչին ժամանակաւոր հրամանատար Կովկասեան բանակի, առանձին բանակի հրամանատարութեամբ միասին։

Թող Աստուած օրհնէ ձեզ, Կովկասեան փառապանծ զօրք, նոր յաղթանակի ճանապարհին։

Գեներալ-ադիւտանտ ՆԻԿՈԼԱՅ

——

## ԳԵՐԱԳՈՅՆ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ ՀՐԱՄԱՆԸ

Հրաման Գեր. Հրամանատարի 1917 թ. մարտի 3-ին Թիֆլիսում։ Միապետական կամքով Աստուածային անիմանալի ճանապարհներով, Ես նշանակուած եմ Գերագոյն Հրամանատար զօրքի։

Խաչ հանելով երեսիս, ջերմ աղօթում եմ Աստուծուն, որ Նա ցոյց տայ ինձ իր ամենազօր օգնութիւնը։ Հաստատ հաւատում եմ, որ յօգուտ հայրենիքի՝ Նա, որ Ամենազօրն է և Ամենաողորմածը, կը լսի իմ աղօթքը։ Խորապէս տոգորուած եմ գիտակցութեամբ, որ Աստուծոյ ամենազօր օգնութեամբ միայն ես ոյժ և բանականութիւն կը ստանամ տանելու ձեզ դէպի վերջնական յաղթանակը։

Ինչ վերաբերում է ձեզ, հրաշալի հերոսներ, ռուսական երկրի գերարի սկայորդիք, ես գիտեմ, թէ ինչքան շատ բան պատրաստ էք դուք զոհաբերել Ռուսաստանի և Գահի բարօրութեան համար. ձեզ հարկաւոր է միայն Աստուծոյ օգնութիւնը։ Ինձ հետ միասին հաւատացէք ուրեմն, որ Աստուած կօգնի մեզ։ Իմացէք, որ Ռուսաստանը գիտակցելով՝ որ վերջնական յաղթութեան հասնելու համար հարկաւոր է Նրա բոլոր որդիների անձնազոհ ու համբերատար աշխատութիւնը, իր արժանապատուութեամբ ու հանգստութեամբ ցոյց կը տայ ամբողջ աշխարհին ռուսական ոգու մեծութիւնը և մեր Մեծ Հայրենիքի անխախտ զօրութիւնը։

Ստորագրել է՝ գեներալ-ադիւտանտ ՆԻԿՈԼԱՅ

---

## ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ

Պետրոգրադում ժողովրդական շարժման առաջին նշանները երևացին փետր. 25-ի երեկոյեան։ Ամբոխը հաւաքուել էր փուռների առաջ և «հա՛ց» «հա՛ց» աղաղակում. փուռները փակ էին հաց չլինելու պատճառով։

Իշխանութեանց առաջարկութեամբ քաղաքի բոլոր կենտրոններում առաւօտուց փակուեցին բոլոր գրասենեակներն ու խանութները, գործերը մեծ մասով այդ օրը կանգ առան քաղաքում։

Երկրորդ օրը, փետրուարի 26-ին, ոստիկանութիւն վաղ առաւօտեան խիստ միջոցներ էր ձեռք առել թոյլ չտալու, որ ժողովուրդը խռնուի փողոցներում, ամեն տեղ կանգնած էին ձիաւոր ոստիկանների խմբերը։ Սակայն չնայելով բոլոր այդ միջոցներին, բանուորների մեծ խմբերը առաջ շարժուեցին և յորդեցին հրապարակների վրայ։ Ոստիկանութիւնը կրկին միջամտեց և սրի զօրութեամբ փորձեց կարգ հաստատել։ Ամբոխը սկսեցին յեղափոխական երգեր երգել և կեցցէներ գոռալ։

Երրորդ օրը, 27-ին, շարժումը աւելի կազմակերպուած ու ազդկալի բնոյթ ստացաւ. այս անգամ միջամտել հարկադրուեց զօրքը և կրակեց ժողովրդի վրայ. զոհեր եղան երկու կողմից։

Փետր. 28-ին գործադուլը համատարած եղաւ. դժգոհութիւնը շատ ուժեղ արտայայտուեց. փողոցներում շրջող ձիաւոր կոզակները իրենց համակրութիւնն են արտայայտում շարժման։

Փետր. 29-ին, աւագների խորհուրդը նիստ է գումարում և որոշում հեռացնել հին կարգը. այդ բանն իրագործելու համար Ռոձեանկոն հեռագրում է Ցարին և ռազմաճակատի բոլոր հրամանատարներին և տեղեկացնում նրանց բոպէի լրջութիւնն ու հին կառավարութեան տապալման անհրաժեշտութիւնը։

Նոյն օրը յեղափոխական բանակը ուժեղացած՝ զինուած խմբով մօտենում է Պետական Դումայի շինութեան, որոնց հանդէպ դուրս են գալիս Չխէիձէն, Կերենսկին և ուրիշ պատգամաւորներ։ Նրանք ոգևորուած ճառեր են արտասանում։ Ռոձեանկոյի նախագահութեամբ նոյն օրը տեղի է ունենում մի խորհրդակցութիւն՝ կազմելու ժամանակաւոր մարմին։ Ընտրուած Կոմիտէն եռանդուն գործունէութեան է ձեռնարկում։ Յեղափոխական բազմութիւնը մեծ թափով առաջ գնալով գրաւում է Պետրոպաւլովսկի յայտնի բերդը և ազատում քաղաքական յանցաւորներին։

Յեղափոխականների այս գործը սարսափեցնում է հին կառավարութեան ներկայացուցիչներին, նախկին նախարարների նախագահ իշխ. Գոլիցին իր հրաժարականն է յայտնում Ռոձեանկոյին, հրաժարւում են նաև բոլոր միւս նախարարները։

Յայտնւում է, որ կայսրուհին աշխատել է որ ռուս բանակը Ռիգայից, ուր ահագին պաշար մթերք է կուտակուած, նահանջի. Պետական Դումայի նախագահ Ռոձեանկոն իմանալով այդ դաւադրութիւնը, հաղորդում է անմիջապէս ցարին. որից յետոյ արձակուեց հրաման Դուման ցրելու, բայց Դուման չի ցրւում և մի քանի պատգամաւորներ՝ գլխաւորապէս Ռոձեանկոյի, Մելիւկովի, Կերենսկու և ուրիշների ղեկավարութեամբ, կազմում են ժամանակաւոր գործադիր մարմին և նախարարական խորհուրդ՝ նախագահութեամբ իշխ. Լվովի։

Մայրաքաղաքում տեղի ունեցած այս յանկարծական փոփոխութիւնը արձագանգ է գտնում գաւառներում, իրար ետևից փոխւում են հին կարգի պաշտօնեաները և նրանց տեղ նորերը նշանակւում. բանակն էլ իր համակրութիւնն է արտայայտում նոր կառավարութեան։

Նոր կառավարութեան արտաքին գործերի նախարար Միլիւկովը նախ դիմում է Դումայում հաւաքուած ժողովրդին մի գեղեցիկ բանախօսութեամբ և յայտնում տեղի ունեցած փոփոխութիւն և նախարարական կազմը, որի ընթացքում բուռն ծափահարութիւններով ողջունում է ժողովուրդը և մեծարանքներ մատուցանում ճառախօսին։

Ապա Միլիւկովը հետևեալ յայտարարութիւններն է անում հեռագրական գործակալութիւններին և օտար լրագրերի թղթակիցներին.

«Մեր նպատակն է վերականգնել Ռուսաստանում մի իշխանութիւն, որ ընդունակ լինի ժողովուրդը տանել դէպի վերջնական յաղթութիւնը թշնամու դէմ։ Նախկին կառավարութեան մեծ ոճիրը այդ է, որ նա երկիրը կազմալուծել էր և ամենածանր փորձութիւնների ենթարկել։ Այդ դրութիւնը կարող էր նոյնիսկ վտանգաւոր ազդեցութիւն ունենալ պատերազմի ելքի վրայ։ Բայց ժողովրդական արդար ցասումը այն աստիճան սաստիկ եղաւ, որ ռուսական յեղափոխութիւնը կատարուեց ամենակարճ միջոցում և անարիւն։

— «Նոր կառավարութիւնը անհրաժեշտ է համարում, որ թագաւորը հրաժարուի գահից պաշտօնապէս և խնամակալութիւնը յանձնուի մեծ իշխան Միխայէլ Ալէքսանդրովիչին։ Այս է մեր անդառնալի վճիռը»։

Եւ իսկապէս թագաւորը ինքը հրաժարուեց յօգուտ իւր եղբօր՝ մեծ իշխան Միխայէլի։ Վերջինս սակայն չհամաձայնեց ընդունել գահը, մինչև որ հրաւիրուելիք սահմանադիր ժողովը չյայտնի իւր կամքը. ուստի և թագաւորական գահը առայժմ մնացել է թափուր։

Նոր կառավարութիւնն անմիջապէս սկսեց ձերբակալել հին ռէժիմի ներկայացուցիչներին՝ Սուխումլինովին, Շտիւրմերին, Պրոտոպոպովին, իշխ. Գոլիցինին և ուրիշներին։

Իր ներկայ գործունէութեան մէջ նախարարական խորհուրդը պիտի ղեկավարուի հետևեալ հիմունքներով. ա) Կատարեալ ազատութիւն քաղաքական ու կրօնական դատապարտեալներին.

բ) Ազատութիւն խօսքի, մամուլի, ժողովների, միութիւնների, գործադուլների.

գ) Վերացումն դասային, կրօնական և ազգային սահմանափակումների։

դ) Անմիջապէս հրաւիրել ընդհանուր, հաւասար, ուղղակի և գաղտնի քուէարկութեամբ հիմնադիր ժողով, որը կը հաստատէ երկրի կառավարութեան և կառավարութեան ձևը. ե) Ոստիկանութեան փոխարինումն ժողովրդական միլիցիայով, ընտրական սկզբունքների վրայ, որ ենթակայ պիտի լինի տեղական ինքնավարութեան. զ) Տեղական ինքնավարութեան կազմը ընտրւում է ընդհանուր, ուղղակի, հաւասար և գաղտնի քուէարկութեամբ. է) Զինաթափ չանել և մայրաքաղաքից չհեռացնել զօրքի մասերը, որոնք մասնակցել են յեղափոխական շարժման. ը) Զօրքի մէջ զինուորական խիստ կարգապահութիւն պահպանել և տալ զինուորներին քաղաքացիական հաւասար իրաւունքներ։

Ժամանակաւոր կառավարութիւնը արդէն գործադրում է վերոյիշեալ ծրագրային օրէնքները։

Ռուսաստանի բոլոր քաղաքներում խանդավառութիւն է տիրում. զօրքը և ժողովուրդը համահաւասար չափով մասնակցում են երկրի մեծ վերածնութեան գործին։ Բոլոր քաղաքներում կազմուած է գործադիր մարմին, հասարակական խաւերից և հոսանքներից բաղկացած, որոնք կամաց-կամաց մաքրում են հին կարգի մնացորդներին և հաստատում ազատութեան նոր շէնքը։

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

I

Փետրուարի 25-ին Հայ Գրողների Ընկերութեան հերթական՝ երեկոյթին խօսեց պ. Դ. Դեմիրճեան՝ «Գրական արուեստը» նիւթի շուրջ։

Գրական արուեստը ըստ դասախօսի բաժանւում է երեքի, հակադրութիւն, գեղարուեստական պատկեր և պատրանք։ Առաջին՝ գրուածքին տալիս է կենդանութիւն ու բարձրացնում գեղարուեստական արժէքը, առանց հակադրութեան, իւրաքանչիւր երկը կորցնում է իւր գեղեցկութիւնը և դառնում է միօրինակ ու ձանձրալի։

Երկրորդ մասը կազմում է գեղարուեստական պատկերը, այն որ իւրաքանչիւր բանաստեղծ ստեղծագործում է լեզու, որ լինում է երաժշտական ու հնչուն։ Երրորդ՝ պատրանքը, զգայնական ու ցնցումնային մի երևոյթ է, որ որևէ գեղարուեստական երկին տալիս է մթութիւն և տարտամութիւն։

Բուն գեղարուեստական գործը պէտք է լինի կենդանի և ցոլացնի մարդկային հոգին, իր իսկական վիճակով։

Դասախօսութեան ներկայ էր. բանաստեղծ Ալ. Ծատուրեանը, որին Ընկերութեան Նախագահ Յովհ. Թումանեան ողջունեց սրտայորդ խօսքերով։

II

Մարտի 3-ին Հայ Գրողների Ընկերութեան հերթական երեկոյթը նուիրուած էր «Հայ բանաստեղծութեան»։

Երեկոյթը սկսուեց Յոֆեանեան դպրոցի օրիորդների «Մեր Հայրենիք» երգով. ուսուցիչ Տիգրանեանի ղեկավարութեամբ, որից յետոյ պ. Մ. Բերբերեանը ռուսերէն ընդհանուր տեսութիւն արաւ հայ հին և նոր բանաստեղծութեան մասին, որին յաջորդեցին մի քանի արտասանութիւններ՝ պ. պ. Գ. Դոլուխանեանի, Ս. Բափանակեանի և օր. Մովսիսեանի՝ Յովհ. Թումանեանից, Ա. Ծատուրեանից, Ռ. Պատկանեանից, Յ. Յովհաննիսեանից և ուրիշներից։

Այնուհետև երգուեցին մի քանի երգեր պ. պ. Մ. Աղայեանի, Ն. Աղբալեանի և ուրիշների կողմից։

Ժողովուրդը խուռն բազմութեամբ բռնած էր ամբողջ դահլիճը։

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ

Ժողովուրդների պատմութիւնը չգիտէ աւելի հոյակապ, աւելի նշանակալից, թէ իր պատճառներով և թէ իր հետևանքներով աւելի բարդ, բայց միաժամանակ առերոյթ աւելի յանկարծական, կարճատև ու անարիւն յեղափոխութիւն՝ քան Ռուսական Մեծ Յեղափոխութիւնն է։ Այն նշանակութիւնն ու ազդեցութիւնը, որ ունեցաւ 19-րդ դարի Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը, նոյնը աւելի մեծ չափերով պէտք է ունենայ 20-րդ դարի համար Ռուսական Յեղափոխութիւնը։ Արտաքուստ որքան յար և նման։

Ռուսական Յեղափոխութեան երկրորդ մեծ յատկանիշը իւր ռացիոնէլ—բանաւոր ու էվոլիւցիոնէլ լինելը—բնաշրջական աստիճանական զարգացումն ու կատարումն է։ Ֆրանսական Յեղափոխութիւնն ևս հանդէս եկաւ բանականութեան դրօշակով զինուած, բայց երկարատև ու յարափոփոխ յեղաշրջումներով ու ցնցումներով նոյնացրեց յեղափոխութիւն, աղէտ և արիւն հասկացողութիւնները։ Աստիճանական յեղաշրջումն—էվոլիւցիան, այն է բնաշրջումը և յեղափոխութիւնը—րեվոլիւցիան նկատւում էին իբրև տարամերժ հակադրութիւններ։ Ռուսաստանի Մեծ Յեղափոխութիւնը ցոյց տուաւ, որ այդպիսի հակադրութիւններ գոյութիւն չունին։ Թէ բնութեան և մարդկութեան հասարակական կեանքում «յեղափոխութիւնը», յեղաշրջման վերջին գործողութիւնը բնական ու աստիճանական զարգացման—էվոլիւցիայի—բնաշրջման վերջին անհրաժեշտ, բնական դրուագն է միայն։ Յեղափոխոխութիւնը ժողովուրդների կեանքում կարող է «անարիւն», առանց խոշոր ցնցումների, աղէտաւոր չլինել՝ ինչպէս որ բնութեան կեանքում ամեն մի առողջ յղութիւն ու զարգացումն համեմատաբար անցաւ երկունքով է վերջանում։ Այս միտքը աւելի հասկանալի կը լինի, եթէ նկատի ունենանք, որ ռուսական կառավարչական կազմը չէր համապատասխանում իւր հասունացող բովանդակութեան և իբրև անախրոնիկ—անժամանակ երևոյթ պահւում էր միայն բացառիկ տեղական քաղաքական ու հոգեբանական արգելքների, խոչընդոտների շնորհիւ։

Այսպէս՝ աստիճանական զարգացման տեսակէտից՝ դիտելով Ռուսական Յեղափոխութիւնը ոչ անակնկալ էր, ոչ էլ անարիւն, անցաւ։ Կարելի է ասել, ընդհակառակը, որ յեղափոխութիւններից—հասարակական կեանքի երկունքներից ամենից ցաւոտն ու ցաւագինը, ամենից տևականն ու արիւնոտը ռուսականն է եղել։ Տասնեակ տարիներից ի վեր ռուսական հասարակական կեանքը իւր զարգացմամբ—իւր որակով ու քանակով զգացնել էր տալիս իւր ձևի—իւր քաղաքական կազմի անբանական, աննպատակայարմար ու անտանելի լինելը։ Սակայն մի շարք առանձնայատուկ հանգամանքների շնորհիւ արհեստական, հակաբնական ձևով ուշանում էր Ռուսաստանի Ազատութեան կամ ազատ Ռուսաստանի երկունքն ու ծնունդը։ Պատերազմը—պատմութեան խորտակիչ, բայց հենց այսու էլ մասամբ շինարար գործօններից մէկը—այստեղ ևս յեղափոխիչ ազատարար դեր կատարեց։ Որպէս մի ծանր աղէտ, մի ուժգին հարուած նա ցընցեց ռուս պետական օրգանիզմը—մարմինը ու անողոք կերպով մերկացրեց նրա փտութիւններն ու հիմնական արատները և հրամայական, կենսական անհրաժեշտութիւն դարձրեց վտանգաւոր, բայց կենսաբաշխ հերձատումն (օպերացիա) ու անդամահատութիւնը, արմատական յեղափոխութիւնն ու բարեփոխութիւնը։

Եւ բնական ու պատմական անհրաժեշտութեամբ, անխուսափելիօրէն կատարուեց պատմութեան ամենաողբերգական դրամաներից ողբերգականի վերջին գործողութիւնը։ Կարծես կախարդական գաւազանի մի հարուածով, առերևոյթ հակառակ պատմութեան բոլոր օրէնքներին, ընդամէնը միայն 48 ժամում

կատարուեց ընդհանուր պատմութեան մեծ յեղափոխութիւններից մէկը։ Մի երկու օրում խորտակուեց հին Ռուսաստանը և ծնուեց Նոր Ռուսաստանը։ Ընկան հին եղեռնագործ ու չարանիւթ կարգերը, որոնց տեղ վերահաստատուեցին նոր, ազատ, հաւասար ու արդար կարգեր։ Ասիական տիպար բռնապետութիւնից Ռուսաստանը կերպարանափոխւում է եւրոպական ազատ ժողովրդապետութեան։ Ոստիկանական, հակաժողովրդական ու աւատական պետութիւնը դառնում է իրաւական ժողովրդական պետութիւն։ Համայն Ռուսաստանի բոլոր ժողովրդները ձեռք են բերում լայն քաղաքական եւ քաղաքացիական ազատութիւններ ու հաւասարութիւն օրէնքի առաջ։ Այն երկրում, ուր երէկ անյոյս ու հեղձուցիչ խաւարն էր թագաւորում, այսօր լոյսն ու ազատութիւնն են իշխում անարգել։ Այնտեղ, ուր բացարձակ միապետութեան բացարձակ կամայականութիւնն էր տիրապետում, այդտեղ այսօր ազատ ու ինքնիշխան ժողովրդի ազատ կամքն է գործում և իւր ազատութեան ու մարդավայել կեանքի գերագոյն սկզբունքները իրագործում։

Նորից յաղթանակում է Արդարութիւնը, Ազատութեան ու բանականութեան երդուեալ թշնամի բռնապետութիւնը։ Խորտակւում է թէ եւրոպական և թէ ասիական բռնապետութեան միջնաբերդը։ Դեռ Ֆրանսական Յեղափոխութեան օրերից Ռուսաստանը հակայեղափոխական ու հակաժողովրդական «Սրբազան Դաշնակցութեան» հիմնադիրն ու պարագլուխն է եղել։ Այդ օրուանից այսօր նա յենուած մի կողմից եւրոպական բռնապետութեան կենտրոնի—Գերմանիայի՝ միւս կողմից էլ ասիական բռնապետութեանց վրայ՝ պատուար էր հանդիսանում ամեն ազատագրական շարժման և արեան ծովերի ու բռնութեան զնդանների մէջ խեղդում թէ հարազատ և թէ օտար ժողովուրդների արդար բողոքը։ Ուստի և ռուսական բռնակալութեան անկումը ոչ միայն ռուսական, այլ և ընդհանուր եւրոպական ու ասիական, այո, ընդհանուր մարդկային արժէք եւ նշանակութիւն ունի։ Խորտակուեց միջազգային բռնապետութեան Բաստիլը։

Եւ ինչպէս իր ժամանակին արեւմուտքից՝ այժմ էլ արեւելքից է հնչում Ազատութեան, Հաւասարութեան և Եղբայրութեան գեղեցիկ կոչը։ Եւ ինչ այն ժամանակ, մի հարիւր տարի առաջ երազ էր թւում, այսօր ժողովուրդների հասարակական-քաղաքական զարգացման արդի պայմաններով կարող է իրականութիւն դառնալ։ Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը Ազատութեան մեծ գաղափարը պատգամեց ու մասամբ իրականացրեց։ Ռուսական Մեծ Յեղափոխութիւնը իրերի բերմամբ ու ընդհանուր պատմական պայմաններով Հաւասարութեան ու Եղբայրութեան սկզբունքները պէտք է ազդարարի նորէն ու իրականացնի։ Ամենից առաջ ռուսական յեղափոխութեան զոռ ալիքը պէտք է տարերայնօրէն յորձանք տայ դէպի Գերմանիա և փլի բուն եւրոպական բռնապետութեան այդ միջնաբերդը։ Միջնաբերդի փլուզումով կը խորտակուեն անհրաժեշտօրէն և իւր մարդկոցները—Աւստրո-Հունգարիան և Թիւրքիան։ Եւ այսպէս ազատագրական, ռամկավարական շարժումը կտարածուի ու կծաւալուի երկրէ երկիր ու կը խորտակի բոլոր «հին կարգերը»։ Նոր, ժողովրդապետական կարգերի հաստատումը անմիտ ու աննպատակ, ուստի և անցանկալի կը դարձնի այս պատերազմը և առհասարակ պատերազմը։

Եւրոպական և ասիական միլիտարիստական—ռազմական պետութիւնների աւերակների վրայ վերաստեղծուած նոր, ժողովրդական պետութիւնները կը միանան իրար հետ խաղաղ և կուլտուրական կեանքի համար՝ կազմելով Ազատ Ժողովուրդների Դաշնակցութիւն։

Վ. Խորէնի

# Ներքին տեսութիւն

## ՎԱՂՈՒԱՑ ՀԱՅ ԳԻՒՂԸ *)

### ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԸ

Հայ գիւղը։

Ի՞նչ էր հայ գիւղը երբեմնի սահմանին այն կողմը. ի՞նչ է գիւղը նոյն այդ սահմանին այս կողմը, «երջանիկ» Կովկասի մէջ։

Մենք ստիպուած ենք ընդհանրացումներ անել, որովհետև արդէն բաւական ծանօթ լինելով Կովկասի հայ գիւղին, թոյլ տուէք ըսելու, որ ոչ մէկ տարբերութիւն չենք գտնում այնտեղի ու այստեղի հայ գիւղի միջև։

Հայ գիւղ չունենք, կամ հայ գիւղին վիճակուած է մօտալուտ անհետացում։ Այս է շատ վայրերու մէջ կատարած պտոյտներուս, քննութիւններուս, հաւաքած վիճակագրական թուերու ընդհանուր ու անխնայ եզրակացութիւնը։

Հայ գիւղը գոյութիւն չունի սահմանին այն կողմը։ Չենք քննելու պատճառները. բոլորին էլ ծանօթ են։ Եւ երէկուայ հայ գիւղի վիճակը վերյիշելով, երբէք կարելի է յուսադրուել Նոր գիւղերու, նոր ձեւով շինուելու մտածումով։

Նորի ու աւերակի մասին դեռ չխօսենք։ Դեռ պահ մի ակնարկ ձգենք այս «երջանիկ» Կովկասի հայ գիւղին վրայ։

Ինչպէս շատ ու շատ ձեռնարկներու, երեւոյթներու, իրողութիւններու և վառ յոյսերու նկատմամբ, նոյնպէս Կովկասի հայ գիւղի նկատմամբ մեր հիասթափութիւնը խորն ու վիրաւոր է։

Կովկասը մեր յոյսերու կենտրոնը, Կովկասը մեր դաստիարակութեան ու նոր գրաւումներու երաշխիքը, բայց Կովկասը ինքն իրեն համար բոկոտն, մերկ ու դատարկ։ Չէք զարմանում, չէ՞։

Զարմանալի է՞, երբ ասում ենք ու պնդում, որ «երջանիկ» Կովկասի մէջ հայ գիւղը անհետանալու վրայ է։ Եւ ինչո՞ւ պիտի զարմանաք։

Կովկասի հայ գիւղը կեղտոտ, վատառողջ ու անկիրթ է։

Մտէք որ գիւղը որ կուզէք, նոյնիսկ Երևան քաղաքէն մի քիչ հեռու գտնուած մէկ գիւղը։ Ամեն տեղ ու ամեն քայլափոխին աղտեղութիւնը քիթը խցել կը տայ և փողոցներու մէջ վազվզող քոսոտ շուներու հաչոցին հետ, ցեխի մէջ քաշքշուող մանուկներու փողոցային լուտանքները չլսելու համար՝ ստիպուած էք մատներու ծայրերով ամուր փակել ձեր ականջները։

Աղբերու կոյտերը, վազուն ցեխը, տաւարի աղտեղութիւնը, կանանց մերկութիւնը, իբր օրհնութիւն արտասանուող անպատկառ հայհուչներ չլսելու, չտեսնելու և չհոտոտելու համար պէտք է փակել ու խցել բերանը, ականջը, քիթը և փախչել, փախչել այս փողոցներէն. հոգ չէ թէ պատերու, քարակոյտերու պիտի ընդհարուիք, փոսերու մէջ պիտի ընկնէք կամ տանիքներու վրայէն վազած միջոցին ծխնելոյզներին կաթուկ դնելու հանդիպելու բաղդն պիտի ունենաք։ Ինչո՞ւ հոգ անէք, երբ հայ գիւղացին ամեն օր, ամեն ժամ նոյն վիճակին ենթարկուած ու վարժուած է, երբ նա, «հայ եղբայրը» կապրի ու կը բարձրանայ կեղտի ու ցեխի մէջ՝ անզգայացած։

Կովկասի հայ գիւղը արբեցութեան ու խաղամոլութեան կենտրոն է մանաւանդ տարուայ այս եղանակին ու արտասուքի այս օրերուն։ «Ամառը կաշխատենք, իսկ ձմեռը կուտենք», այս է անոնց փիլիսոփայութիւնը։ «Օթախներու» գարշահոտ, ոչլոտ, կույոտ մթնոլորտին մէջ ու փախաթներու վրայ նրանք կը յօրան-

*) Տես «Համբաւաբեր» № 9.

ջին ու կը կատակաբանեն գռեհիկօրէն ու վայրագօրէն։ Մէկի օձիքը բռնելէ յետոյ, նա այնուհետեւ հաւաքումներու խօսակցութեան, զուարճութեան ու խծբծանքի առարկան է։ Թուքը պատերը կապտակացնէ ու տաւարի կղկղանքը, փոքրիկներու արտաթորութիւններու հետ միասին, թոնիրի շուրթերը կը զարդարեն, ուր, կողք-կողքի, դրուած են կաթն ու վարտիկը։ Կերակուրի ափսեն, լուացքի ամանն ալ է. Թէյի բաժակը «պիծայի» մոխրամանն է միանգամայն։

Արհեստ, խանութ, առուտուր—գէթ ձմեռուայ մէջ—գոյութիւն չունին հայ գիւղի մէջ։ Պատռուած կօշիկներով, ծակոտած անդրավարտիկներով ու կոտրած նստարանով հայ գիւղացին «եօլա» գնալ շատ լաւ գիտէ։ Ազատ ու անաշխատ օրեր են և հայ գիւղացին սիրով համաձայնում է տասնեակ վերստերով մի հեռաւոր տեղ գնալ մի քիչ ծխախոտ, թել ու ասեղ, թաշկինակ ու գոգնոց գնելու համար։ Ժամանակի արժէքի, յոգնածութեան, ֆիսաներու, ինքնապաշտպանութեան հասկացողութիւն չունի Կովկասի հայ գիւղացին։ Եղաւ՝ կուտէ, չեղաւ՝ կը նայէ կամ հարեանի «թութունը» կը խնդրէ՝ մէկ-երկու թերթ ծխախոտի թուղթի հետ՝ առանց երբէք ամաչելու։

Կովկասի հայ գիւղը երբեմն խանութ էլ ունի—փոքրիկ որջարոյն, որը խանութ լինելուց աւելի գիւղի երիտասարդներու խաղատունն է, ուր խաղալու թուղթեր կը մաշուին ու կաղտոտին օրեր շարունակ ու իրարու ետեւէ։ Խանութն անուն էլ ունի անպայման—Акоповъ, Арутюновъ, Маркосовъ, բայց ոչ մէկ անգամ «Յակոբեան, Յարութիւնեան, Մարկոսեան», կամ գէթ Акопянъ, Арутюнянъ, Маркосянъ և այլն։ Օտարասիրութիւնը, նմանուելու յատկութիւնը, օրինակելու և իրարու ետեւէ վազելու ապուշ դրութիւնը վազած ու հասած է Կովկասի հայ տուներէն ու սենեակներէն ներս, մինչև թոնիրի շուրթը։ Եւ քաղաքը կը մեղադրուի գիւղի մէջ, երբ կը հարցնես այն անմիտ ընդօրինակութեան պատճառը։ Չէ՞ որ Երևան քաղաքի հայ խանութներն էլ նման անուններ ունին առանց երբէք հայ տառի ու հայ անուան, և չէ՞ որ Երևանը, իր կարգին, ընդօրինակութիւն է Թիֆլիս քաղաքին, Ռոստով, Մոսկուա, Պետրոգրադ։ Իսկ այնտեղ, Թուրք խանութներու ճակատին դուք կը գտնէք անպատճառ Թուրքերէն անուններ ու տառեր։

Կովկասի հայ գիւղը տգէտ է։ Իւրաքանչիւր գիւղի մէջ հազիւ մէկ կամ երկու գրագէտներ գտնէք, բայց բնաւ ռուսագէտ, գէթ սակաւ հայերէն կոկիկ խօսող։ Դրիչն ու թուղթը իսպառ վտարուած են հայ գիւղէն և գիւղացին նոյնքան հասկացողութիւն ունի մեր անցեալի ու ներկայի մասին, որքան մի չինացի։ Լրագիրը պատերու զարդարանք է միայն, և քաղաքէն գիւղը հասնող լուրերը՝ արտառոց, յեղաշրջուած, կոպտացած ու այլասերուած։

Կովկասի հայ գիւղի պատանին հօտաղ, հորթարած, ջրկիր ու ծառայ է։ 20—30 գիւղ ունեցող շրջանի մէջ հազիւ 4—5 դպրոց կան, որոնք ապրում են հիւանդ ու անդամահատուած վիճակով և յաճախ երկար հանգստանալով։ Եղած դպրոցները խեղճ ու կրակ, վատառողջ ու անյոյս, խոնաւ ու ցուրտ են։ Աշակերտները իրարու վրայ են դիզւում և ուսուցիչը բառեր է արտասանում, որոնք ցնդում են ու անհետանում են բերնէն արձակուած ծխախոտի ծուխին նման։ Հայ ուսուցիչը «ուսուցիչ» է, ինքը իրեն համար ու իր պահանջներուն տէր, յաճախ առանձին ու անսահման, բայց շատ քիչ գիտակից իր պարտականութեանց։

Կովկասի հայ հողը անմշակ է ու ոչ-պտղատու։

Մշակութեան նոր ձևեր, պարարտացման նոր միջոցներ, պտղաբերութեան նոր մեթոդներ ոչ մէկ անգամ Կովկասի, ոչ մէկ գիւղէն ներս մտած են։ Իգդիրի շրջանի թուրք գիւղերու մէջ տեսած ենք երկաթէ գութաններ, ոչ մէկ հայ գիւղի մէջ երկաթէ գութան գտանք։

Մշակութեան նահապետական ձևեր շարունակւում են մնալ և պիտի մնան, որովհետև սովորամոլութիւնը հաստատուած է հայ գիւղի մէջ, ինչպէս որ աղբի կոյտերը պիտի մնան յաւիտեանս, մինչև որ ինքնին վերանան։ Բնական դիւրութիւններէ աւելի, տեսածն ու վարժուածը գործադրելու հասկացողութիւնն է, որ մնում է արմատացած, և այդ պատճառով նոյն շրջանի մէջ մէկ գիւղը բրինձ, միւսը խաղող, մի ուրիշը բամբակ կամ ցորեն կը ցանէ ու կը հնձէ, առանց փորձելու անգամ իր դրացու օրինակին հետևելու։ Արարատեան դաշտի, այս ընդարձակ ու բերրի տարածութեան վրայ, ոչ մէկ գիւղի մէջ տեսանք գետնախնձորի (pomme de terre) մշակութիւնը, որու սննդարարութիւնն ու անհրաժեշտութիւնը, մասնաւորապէս հացի պակասութեան տարիներուն, վաղուց հաստատուած ու ընդունուած է ամեն տեղ, բայց ոչ մէկ անգամ Կովկասի հայ գիւղի մէջ։

Կովկասի հայ գիւղը կեղտոտ, տգէտ ու հողը անմշակ։ Իսկ ո՞վ փորձեց մինչև այսօր մի անգամ ճամբայ ցոյց տալու, դըպրոց բանալու և լսեցնել նոր միջոցներու, նոր ձեռնարկներու օգտակարութիւնը։

Կանոնաւոր ճամբայ իսկ չէք գտնում այնտեղ։ Եզնաքարշ սայլերը ճօճում են քարուտ ու քանդուած կածաններու վրայ, ինչպէս առագաստանաւը՝ ալեկոծ ծովին վրայ։ Ոչ ոք հոգս չէ տանում մաքրութեան, ոչ ոք չի խօսում առողջապահութեան տարրական կանոններու, մաքուր ու քաղաքավարի նիստ ու կացի մասին։ Բժիշկը «հոտոտելու առարկայ է», որու անունը լսուած է, բայց որու համար ենթադրուած է, որ նա երեք աչք ու երկու քիթ ունի, իսկ գիւղի հիւանդը ձգուած է իր բաղդին և նա «ի վերուստ» կը յուսայ իր փրկութիւնը։

Կովկասը, հայութեան այս «երջանիկ» ու «կրթուած» վայրը, խուլ ու համր եղած է իր իսկ կարիքներու, իր իսկ պահանջներու համար։ Չէ լսած ու չէ տեսած։ Այս է իրականութիւնը, թէև դառն ու խոցոտ։

Ո՞ր գիւղն ունի փոխատու կամ վարկի դրամատուն, կօոպերատիւ կամ սպառողական խանութ կամ կազմակերպութիւն, թէև տղրուկներ շատ։ Ո՞ր ընկերութիւն կամ ո՞ր հաստատութիւն փորձեց անգամ մը հայ գիւղի, դէպ հայ գաւառական կենտրոնի մը մէջ բանալ մշակութեան, երկրագործական գործիքներու պահեստ մը, փորձնական դաշտ մը, տաւարի ու ոչխարի, հաւի ու բանջարեղէններու տեսակներն ու ցեղերը ազնուացնելու կենտրոններ, որպէսզի հայ գիւղացին մօտէն տեսնէր ու մօտէն ընդօրինակէր, ինչպէս որ մօտէն ընդօրինակած է քաղաքի հայ խանութպաններու օտարասիրութիւնն ու տգիտութիւնը։

Մենք բնաւ սովոր չենք ողբալու, բայց ոչ մէկ անգամ կը համարձակենք քօղարկելու այն վիրաւոր իրականութիւնը, որուն ականատես ենք ներկայիս՝ մեր «գաղթական» վիճակով, Կովկասի մասին մեր ունեցած երբեմնի յոյսերու և երևակայութիւններու դղրդալից խորտակումէն յետոյ։

Մասիսի թևերը երկար ժամանակէ ի վեր մեզի բաժնեցին ու շուք ըրին մեր տեսողութեանը։ Մութի մէջէն շատ բաներ լսած էինք, բայց չէինք տեսած։ Այսօր, սակայն, Մասիսի թևերը կտրատուած են, ինչպէս մեր սրտերը, և մենք կարող ենք լսել ու տեսնել միանգամայն։

Աւերակ այնտեղ, օտարացում ու անհոգութիւն այստեղ։

Եւ պէտք էր, որ «Գաղթականի» վիճակէն օգտուէինք փարատելու համար խաւարը, վերաշինելու համար մեր տունը։

Ա. Մաքսապետեան

(Շարունակութիւնը հետևեալով)

# ԳԱՒԱՌ

## «ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

*Տրապիզոն, 15 փետրուարի*

Տրապիզոնի հայ կեանքն սկսում է կենդանութեան նշաններ ցոյց տալ։

Կ. Հ. Բ. Ը. Տրապիզոնի նորաբաց ճիւղի վարչութեան նախաձեռնութեամբ փետրուարի 9-ին տեղիս հայոց դպրոցական շէնքի մէջ տրուեց մի գրական-երաժշտական երեկոյթ Վարդանանց տօնի յիշատակութեան առթիւ։ Հանդէսը բացուեց «Տէր, կեցո դու զՀայս» ազգային օրհներգով։ Ապա խօսեց հ. Մելեան հինգերորդ դարի աշխարհացունց պատերազմի մասին։ Բանախօսը հանդէս գրեց խղճի ազատութեան համար մղուած պայքարը Հայաստանում Սասանեան բռնապետութեան դէմ և Բիւզանդ-Հռոմէական քաղաքակրթութեան ինքնապաշտպանութեան պայքարը հոնների ու սրանց առաջնորդ Ատիլլասի դէմ Եւրոպայում—1451 թ.։ Հ. բանախօսը համոզիչ կերպով զարգացրեց այն միտքը թէ՝ որ մի անգամ ճշմարտութեանն աշակերտում է, չի կարող սուտի առաջ գլուխ ծռել։

Յետոյ տրուեց դերասան Մելքոնեանի մասնակցութեամբ Ա. Ահարոնեանի «Արցունքի Հովտից» մի պատկեր։ Երաժիշտ պ. Խոջայեանի կազմած քառաձայն խումբը երգեց ազգային երգեր։ Ինքը, պ. Խոջայեան հասարակութեան խնդրանօք, մեներգեց հայերէն, ռուսերէն և իտալերէն լեզուներով։ Մեներգեց և պ. Ստամբոլցեան, որ փոխ-նախագահն է վարչութեան։ Երեկոյթը գրաւել էր հայերի այնպիսի մեծ բազմութիւն, որ մինչև այդ օրը ոչ ով չէր կարող մտածել՝ թէ այդքան հայեր կան տակաւին Տրապիզոնում։ Երեկոյթը թողեց շատ հաճելի տպաւորութիւն։

Նոյն օրը Վարդանանց ու մեր նորագոյն նահատակների յիշատակին ս. Աստուածածին եկեղեցու բակում, պատարագից յետոյ, կատարուեց հոգեհանգիստ։

Տրապիզոնի Կ. Հ. Բ. Ընկ.-թեան նորակազմ ճիւղն արդէն ունի 100-ից աւելի անդամ, սրանց թւում են երեք մշակական անդամներ. պէտք է յուսալ, որ ճիւղը կարող է ունենալ շատ արդիւնաւոր գործունէութիւն։

Տեղումս գործում է դեկտեմբերի 1-ից սկսած Հայկական Կոմիտէն ամենայն բարեխճութեամբ։ Նա այս կարճ ժամանակամիջոցում տխրահռչակ կազմակերպութիւնից յետոյ թափթփուկ մնացած շարժական իրերը խնամքով հաւաքելուց, աճուրդի ու վաճառքի դնելուց ստացել է 40 հազար ռուբլու չափ մի գումար։ Կազմել է հայապատկան անշարժ կալուածների ցուցակը, հետամուտ է լինում անիշխանութեան ժամանակ սրա ու նրա գրաւած իրերի ձեռք բերելուն, խնամում է գիւղերում հատ ու կտոր ցրուած հայերին, կազմել է Տրապիզոնի և սրա շրջակայքում ապրող հայերի ճիշտ անուանացուցակը և կարիքաւորների համար պարտուպատշաճ գրքոյկները. վերանորոգում է քայքայուած հայ տներից և բնակեցնում այս տեղերում անտուն մնացած հայեր են։ Այժմ ծրագրում է հաստատուն կերպով ձեռնամուխ լինելու Թուրքերի մէջ գերի մնացած գլխաւորապէս տրապիզոնցի հայերին ու որբերին ազատելու կարևորագոյն գործին։ Սրա համար խոշոր գումարներ են պէտք—յոյս մեծ ունի Ռուսիայում գտնուող կարող տրապիզոնցիների նիւթական աջակցութեան վրայ։ Ամեն տեսակ նուէրներ ու դրամներ այդ նպատակով կարելի է ուղղել Տրապիզոն—Հայկական Կոմիտէի անունով։

Ազգային դպրոցական շէնքի միջին յարկում երկու սենեակի մէջ ուսանում են առ այժմ 40 տղայ ու աղջիկ։ Ուսուցանում են քոյր ու եղբայր Փիրանյեանները. երկուսն էլ գաղթականներ, վերջերս Երզնկայից եկած. ուսած և աւարտած են մինը անգլիական, միւսը գերմանական կոլլէժներում. ստանում են դասը 50 ռուբլու հաշուով ամսական ռոճիկ։ Սպասւում է, որ դպրոցական ամբողջ շէնքը այլ և այլ իրերից շատ շուտով դատարկուելուց և մաքրուելուց յետոյ ընդունի որբերին և դառնայ յարմարաւոր դպրոց ու որբանոց։

Ս. Ստեփաննոս եկեղեցու շատ փառաւոր շինութեան թերի մնացած կարևոր մասերը աւարտելու վրայ աշխատում է յատուկ հոգաբարձական մարմինը նախագահութեամբ պ. Նիկ. Մելիք Փարսադանեանի։ Բարձրաբերձ գմբէթի ռումբից քանդուած մասը շինուած է, պատուհանների գունաւոր ու ճերմակ ապակիների մի մասը ձգուած, տաճարի ներսը դատարկուած է. պէտք է յուսալ, որ մինչև Զատիկ ըստ ամենայնի պատրաստ կը լինի ժամասացութեան համար։ Այն տրապիզոնցիք, որոնք կը ցանկանան իրենց եկեղեցու շինութեան կամ ներքին պայծառութեան ու բարեզարդութեան համար դրամական նուէրներ ուղարկել, պէտք է հասցէագրեն կամ հ. Մելեանին կամ շինութեան հոգաբարձութեան նախագահ ենթադնդապետ Նիկ. Մելիք. Փարսադանեանին։ Ս. Ստեփաննոս եկեղեցու բակի հարաւային կողմից ինչ որ մարդիկ երեք աչք խանութներ էին շինել, որով եկեղեցու տեսքը փակում ու տգեղացնում էին և բակը նեղում։ Հ. Մելեանի աշխատութեամբ այդ խանութները քանդուեցին և փողոցի կողմից 5—6 արշին լայնութեամբ ընդարձակուեց եկեղեցու բակը։

Ամենօրեայ ժամասացութիւնը և ծխականների հոգևոր ծէսերը կատարում է Զարշամբեցի գաղթական մի երիտասարդ քահանայ, Խորէն Գալուճեան։ Արդէն հիմք են դրւում թէ քաղաքում և թէ շրջակայքում օրինաւոր ընտանիքների։ Կատարուել են մօտ 20—25 պսակի օրհնութիւններ։

Բուն բարեկենդանի կիրակի օրը, տեղիս քաղաքային ինքնավարութիւնը կազմել էր մի հանդիսաւոր նիստ իր գործունէութեան ներքին հրահանգութեան հաստատուելու առիթով։ Հրաւիրուած էին քաղաքիս ականաւոր հաստատութիւնների ներկայացուցիչները. սրանց թւում հայոց հոգևոր իշխանութեան ներկայացուցիչ հ. Մելեան ու Հայկական Կոմիտէի պ. Նախ. Առաքելեան։ Նիստը բացուեց Տրապիզոնի ամբողջային շրջանապետ գեներալ Շվարցի նախագահութեամբ. կարդացուեցին հաստատուած կանոնները, քաղաքի մուտք ու ծախսերի նախահաշիւը և այլ և այլ մասերի նկատմամբ կազմուած նախագծերն ու ծրագրերը։ Քաղաքը, որ ռուսների կողմից գրաւած ժամանակ իր գանձարանում գրեթէ ոչինչ չունէր, այժմ 1,200,000 ռուբլու նախահաշիւ է կազմում և ձեռնարկել է հին, նեղ, աղտոտ փողոցների լայնացման, մաքրելուն, նորանոր հրապարակների ու զբօսավայրերի ու այգիների կառուցման. բացել է թրքական յատուկ դպրոց, կազմել է քաղաքի ճիշտ քարտէզը ու հիմնում է հիւանդանոցներ, ուշադրութեան է առնում քաղաքի՝ առողջապահական պայմանների բարւոքումը և այլն և այլն։ Եւ այս ամենի համար բոլոր զեկուցանողները շեշտում էին, որ պարտական են գեներալ Շվարցին *)։ Սա իր կարճ պաշտօնավարութեան ընթացքում ցոյց է տուել իրեն մի բարեխիղճ, ազնուակիրթ, քաջարթուն և անաչառ իշխանաւոր։ Քաղաքի ինքնավարութեանն է յանձնուած Թուրքերի կողմից լքված շարժական ու անշարժ կալուածների կառավարութիւնը, հողերի շահագործութիւնը։ Այս գործողութիւնից ստացուած արդիւնքի 50 տոկոս գործադրուելու է քաղաքի բարեզարդութեան վրայ։ Նոյն գործողութիւնները հայապատկան ստացուածքների վերաբերմամբ կատարում է Հայկական Կոմիտէն։

Տրապիզոնի եկեղեցական ազգային կալուածները մեծ մասամբ վարձու տրուած և են կիսամեայ վարձագները արդէն գան-

*) Գեներալը ստացել է արձակուրդ և օրերումս պատրաստւում է քաղաքից մեկնելու.

*ձուած։ Կան այնպիսի շէնքեր, որոնք գրաւման (ռեկվիզիցիայի) են ենթարկուած կառավարութեան կողմից, կան որ հիմնական վերստուգութեան կարօտ են։*

*Հ. Մելեան արդէն զբաղուած է վանքապատկան ընդարձակ հողերը ինչպէս պահել-պահպանելու և արդիւնաւոր դարձնելու խնդրով։*

*Տրապիզոնում ամբողջ ժամանակ հրաշալի պայծառ ու տաք եղանակներ էին. վերջերս բաւական ձիւն եկաւ. սակայն այսօր գրեթէ ձիւնի հետքը վերացած՝ նորէն ծայր է տուած արևոտ եղանակը։*

*Դիտող*

---

## ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ

*9-ին մարտի տեղի ունեցաւ Հ. Կ. Կ.-ի նիստը նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։*

*Տիկ. Ս. Օգանեզեանը ներկայացրեց «Մի բաժակ թէյի» փետրուար ամսուայ հաշիւը. մուտք՝ 9,761 ռ. 17 կ., ծախս՝ 6,883 ռ. 36 կ., մաքուր արդիւնք՝ 2,877 ռ. 81 կ.։*

*Պ. Նախագահը զեկուց հետևեալները. Պ. Տրապիզոնի Կոմիտէիս բաժանմունքից ստացուել է 30,000 ռ., որը իբրև անձեռնմխելի գումար մուծուած է Երկ. Փոխ. Խնայողակ. Վարկ. Ընկ. դրամարկղը (կասսան)։*

—

*Բ. Կով. Թոքախտի դէմ կռուող Ընկ. գրութիւնը, որով խնդրում են Կոմիտէից ապրիլի 20-ին, սպիտակ ծաղկի օրը «Մի բաժակ թէյի» շէնքը զիջել իրանց։*

*Ի նկատի առնելով, որ մուտքը յատկացուելու է վիրաւոր զինուորներին՝ զիջումը յարգուեց։*

—

*Գ. Կոմիտէն ի նկատի առնելով այն հանգամանքը, որ գարնան հետ գիւղացի որբերը թերևս կը ցանկան դաշտային աշխատանքներ, որոշեց Նոր-Բայազէտի, Դիլիջանի, Գանձակի, Շարվանսարայի, Ալէքսանդրապոլի և Ալաշկերտի որբանոցներին կից հիմնել բանջարանոցներ, որի համար և յատկացրուեց մի որոշ գումար։*

—

*Դ. Երևանի Արևմտահայ Ուսուցչ. Միութիւնների Կենտր. Վարչութեան գրութիւնը, որով խնդրում են նոր հիմնած Արևմտահայ ուսուցչական ֆոնդի համար մի գումար յատկացնել. Կոմիտէս այս օգտակար գործին իւր միջոցներից յատկացրեց 500 ռ.։*

—

*Ե. Ալէքսանդրապոլի որբանոցներին կից որոշուեց բաց անել չուստակարութեան և հիւսնի արհեստանոցներ։*

—

*Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.*

*— «Тиф. Лист.»-ի խմբագրութեան միջոցով պ. Գէորգ Խանդալամեանից յօգուտ ճաշարանի 25 ռ.։*

*— Առաջին մասնաւոր գրատանից (լոմբարդ), յօգուտ հիւանդանոցի 19 ռ. 84 կ.։*

*— Թեմիր-Խան-Շուրայից Լիւդմիլա Վլադիմիրովնա Կամարովսկուց յօգուտ փախստականների 19 ռ.։*

*— Տիկին Եղիսաբեթ Սարգսեան Միրզոյեանից դպրոցական նպաստ 600 ռ.։*

---

# Քրոնիկոն

*Երեքշաբթի, մարտի 7-ին քաղաքային դումայի դահլիճում կայացաւ Հայ Ցեղափոխ. Դաշնակցութեան ժողովը ներկայութեամբ մի քանի հազար մարդկանց։ Տեղ չլինելու պատճառով ժողովրդի մի մասը դուրսը մնաց։ Ճառեր խօսացին Վանի հերոս Արամ, Արշակ Ջամալեան, Ս. Վրացեան, Ա. Արեղեան, Ռ. Զօրեան եւն։*

*— Զօրքի գերագոյն հրամանատարի կարգադրութեամբ Մ. Ն. Աթաբէկեանը նշանակուեց ոստիկանութեան ժամանակաւոր կառավարիչ։ Այդ պաշտօնի մէջ մի քանի օր մնալուց յետոյ քաղաքային գործադիր յանձնաժողովի Կոմիտէի կարգադրութեամբ քաղաքային միլիցայի պետ նշանակուեց սպայ Կոգան*

*— Գործադիր Յանձնաժողովի կարգադրութեամբ ձերբակալուած է Թիֆլիսի նախկին ոստիկանապետ Զդանովսկին։*

*— Թիֆլիսի կոմիսարներ են ընտրուած առաջին Պետական Դումայի անդամ Նոյ Ժորդանիա, քաղաքագլուխ Ա. Խատիսեան և սպայ Մ. Պապով։*

*— Փոխարքայի պալատը վերածուած է զինուորական հիւանդանոցի (լազարէթ), արքայական տան դրօշակի տեղ տնկուած է Կարմիր Խաչի դրօշակ։*

*— Թիֆլիսի Գործադիր Յանձնաժողովը իր միջից ընտրել է Գործադիր Բիւրօ՝ հետևեալ կազմով. 1) երեք կոմիսարներ՝ Ա. Խատիսեան, Ն. Ժորդանիա և Պապով, 2) ինը անդամ՝ Ռամիշվիլի, Գեղեանով, Վերեշչագին, Մեսխի-Ալէքսէև, Ս. Յարութիւնեան, Ա. Ջամալեան, Չխարէկով. Արդուրրահիմ բէգ Ախվէրդով, Լոմտատիձէ, 3) երեք քարտուղար, Ա. Բաբեան, Մախանաձէ և Կապուճաձէ։*

*— Թիֆլիսի կայազօրի (գարնիզոնի) մի քանի գնդեր երէկ, մարտի 8-ին, ցերեկուայ ժամը 2—4-ին հանդիսաւոր թափորով, յեղափոխական դրօշակներով անցան քաղաքի փողոցներով, մարսէյլէզ երգելով։ Զօրքը մտնելով Երևանեան հրապարակը, կանգ առաւ քաղաքային դումայի առաջ։*

*Գնդապետը ողջունեց քաղաքային Գործադիր Յանձնաժողովին, յայտնելով որ գունդը ըստ ամենայնի ենթարկւում է ժամանակաւոր կառավարութեան և եկել է ողջունելու Թիֆլիսի Գործադիր Յանձնաժողովին ու դնելու իրան նրա տրամադրութեան տակ։*

*— Մարտի 7-ին առաւօտեան ժամը 10-ին մեծ իշխան Նիկոլայ-Նիկոլաևիչը, գեներալներ Եանուշկևիչը և Օրլովը և փոխարքայի դիւանի վերատեսուչ Պետերսոնը իրենց ընտանիքներով Թիֆլիսից մեկնեցին։*

*— Կայծակ Առաքել. Խորին կսկիծով լսում ենք յեղափոխական գործիչ Կայծակ Առաքելի յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ ամսոյս 6-ին Երզնկայում։*

*Յիշեալ հերոսը եղել է Անդրանիկի զինակիցներից մէկը, գործել է Սասնոյ լեռներում, Մշոյ դաշտում, Գաւաշում, Կարճկանում և 1912—1915 թուերին Վանում։ Վանի պատմական կռիւների ժամանակ Կայծակ Առաքելը, զինուորական մարմնի անդամներից մէկը, կռւում էր իսկական զինուորի քաջութեամբ և սառնարիւնութեամբ. հիացմունքով միայն կարելի է նկարագրել այն գիւցազնական գործերը, որ նա կատարեց կռիւների ընթացքում։*

*— Կովկասի կոմիսարներ. Նախարարների խորհրդի նախագահ իշխ. Լվով հեռագրում է Թիֆլիսի Գործադիր Կոմիտէտին, որ ժամանակաւոր կառավարութեան կողմից իբրև լիազօրներ Կովկասի կառավարութեան ուղարկւում են Պետական Դումայի պատգամաւորներ՝ Մ Պապաջանեան, Ջաֆարով, Խարլամով, Արճշիձէ ու Պերեւերզով։*

# Գեղարուեստ

Վախում եմ՝ մարես վտիտ մոմի պէս,
Կամ անցնես — թռչես գարնան հովերից,
Երազիս նման հուր դառնաս անտես,
Մի պատկեր սիրուն իմ հին յուշերից...

Վախում եմ՝ մարես ու երբ որ անցնես,
Տանջի իմ հոգին մի անգութ կարօտ...
Տենչերս էլ ցրես, ինձ մենակ թողնես
Անցնելու երկար իմ ուղին քարոտ...

Աստղիկ Ոսկերչեան։

---

## ՄՆԱՔ ԲԱՐՈՎ

(«Արցունք, — Բարձունք» գրքից)

Ծիլ ու ծառին
ու ծիծառին
ըսէք որ ես մեռնի՜մ պիտի։
Զով ձորակին
ծով-ծորակին
ըսէք՝ որ ես մեռնի՜մ պիտի։
Դո՛ւք, բո՛յր ծաղկին
ու ծիծա՛ղ-կին
ձեզի կարօտ մեռնի՜մ պիտի։
Ինձ երգ յուշող
սէր, վէրք ու շո՛ղ,
ձեզ պիտ թողնեմ, մնաք բարո՛վ։

Ա՛խ, այս ցրտին՝
իմ հէգ սրտին
օրօր ըսէք, մեռնի՜մ պիտի։
Ա՛խ, իմ հոգուն
տուէք խոր քուն,
օրօր ըսէք, մեռնի՜մ պիտի։
Իմ թոյլ շնչին
գէթ մի շնչին
փարկեան տուէք, մեռնի՛մ պիտի։
Ա՛խ իմ անգին,
օր ու կեանքին
ըսեմ մեղմիկ՝ մնաք բարո՛վ։

Կարօտ ոսկի,
անկեղծ խօսքի՝
սիրածը ձեր մեռնի՜ պիտի։
Ա՛խ, այս գեղին,
վշտոտ տղին
ափսոսացէք, մեռնի՜ պիտի։
Հողը բացէք
ու ողբացէք,
արտասուեցէք, մեռնի՜ պիտի։
Սիրտը ոսին
յանձնէք փոսին...
Վերջին անգամ մնաք բարո՛վ։

ԱԶԱՏ-ՎՇՏՈՒՆԻ

1914. Միլանո

---

## ՍԿԱՐԼԱՏԻՆԱՅԻ ԲԺՇԿՈՒԹԻՒՆ

I

Նախապաշտպանութեան — профилактика-ի գլխաւոր նպատակը այն պէտք է լինի, որ առողջները առանձնացած լինեն հիւանդներից. այդ նպատակով բարեկարգ քաղաքներում կառուցուած են առանձին հիւանդանոցներ մէկ քանի վտանգաւոր հիւանդութիւնների համար, այն է՝ քութէշով (սկարլատինի), բկացաւով, (դիփտերիտի) և բծաւոր տիֆով հիւանդների համար. իսկ այժմ քութէշը այնպիսի ծաւալ է ստացել Թիֆլիսում, որ ազատ տեղ չկայ։ Քաղաքային վարչութիւնը մեծ դժուարութեան մէջ է և ամեն ջանք գործ է դնում, որ ստեղծի յամարութիւն՝ քութէշաւորներին առանձնացնելու տներից՝ հիւանդանոց ուղարկելով։ Այդ հիւանդութեան համաճարակը գիւղերում աւելի սարսափելի է, ինչպէս գրել են Ղազախի Ղալաչա գիւղից. համարեա երեխայ չի մնացել մէկ ընտանիքում, երեխաները զոհ են գնացել քութէշին։

Քութէշի տարածման գլխաւոր աղբիւրը դպրոցներն են, ուստի պիտի լուրջ հսկողութիւն ունենալ, որ թէ հիւանդացած աշակերտները՝ մինչև կատարելապէս առողջանալը և նրանց բնակարանները ախտահանելը՝ չյաճախեն դպրոցը նոյնպէս առողջները յիշեալ տներից չպիտի յաճախեն դպրոցը։ Քանի որ քութէշը շատ երկար է տևում, մանաւանդ եթէ հիւանդութիւնը բարդ է, ուստի ծնողները, անգիտութեամբ կամ յանցաւոր անփութեամբ շուտով ուղարկում են հիւանդացած երեխաներին կամ միւս երեխաներին դպրոց, որով և վարակման տարածման պատճառ դառնում։

Քութէշից յետոյ օրէնքով թոյլատրելի է աշակերտի յաճախումը դպրոց, եթէ անցել է 6 շաբաթ, եթէ [illegible] հետք չկայ նրա վրայ։

Պատուաստ Ղաբրիչեվսկու. — Ինչպէս բկացաւի (դիփտերիտի) ժամանակ, նոյնպէս և քութէշի նախապաշտպանողական պատուաստը հիւանդ եղած տան միւս անդամներին վերոյիշեալ գիտնականի վակցինայի սրսկում է կատարում 0, 1, 0, 2, 0, 3, 0, չորսից մինչև մի օրուան ընդմիջումներով և պաշտպանում է վարակումից։

Այդ կարելի է ի հարկէ այնտեղ, ուր բժշկական ձեռքեր կան։

Պանցողութիւն ոչ մի ախտի ժամանակ այնքան կարևոր չէ, ինչ որ քութէշի ժամանակ, քանի որ յաճախ է պատահում երիկամունքների տակից ջրգողութիւն, ուստի բոլոր յայտնի բժիշկները առաջարկում են կաթի մեծ գործածութիւն։ Հռչակաւոր ֆրանսիացի ուսուցչապետ Ժակուն (Жаку) պնդում է, որ եթէ կաթի գործածութիւնը առատօրէն տեղի ունենայ, չի լինի երիկամունքների ծանր հիւանդութիւնը։ Դժբախտաբար այդ բանն իրագործել այժմ անկարելի է այդ սննդի պակասութեամբ, ինչպէս գրել էր երեխայոց հիւանդութիւնների յայտնի բժիշկ Զարգարեանը։

Վաննաների գործածութիւնը քութէշի ժամանակ շատ կարևոր է, մանաւանդ եթէ երիկամունքների տապ է պատահում. կաթ և վաննա շատ կարևոր բժշկական գործօններ են հանդիսա-

նում։ Վաննան պէտք է լինի տաք ջրից 30 տոկոս Րէօմիւրի— իսկ վաննից յետոյ պէտք է հիւանդին պառկեցնել տեղերում և քրտնացնել։

Որովհետև այս հիւանդութեան ժամանակ բարդութիւններ յաճախ են պատահում, ինչպէս իր տեղում մանրամասն գրած ենք, չպիտի թոյլ տալ, որ հիւանդը՝ թէ մեծ և թէ փոքր՝ շուտով թողնեն անկողինը և դուրս գան տնից, թէկուզ տաքութիւնը դադրած լինի, որովհետև ամեն մէկ ցրտահարութիւնը կարող է բարդութիւններ յարուցանել, մանաւանդ երիկամունքների տապ, ականջի հիւանդութիւն, որից կարող է խլութիւն առաջանալ ուստի և պէտք է առանձին ուշադրութիւն դարձնել ականջի հիւանդութեան վրայ և մասնագէտի դիմել։

Ես վերջերս բժշկում էի մէկ 8-ամեայ օրիորդի հիւանդ սկարլատինայով, որը ունեցաւ համարեա բոլոր բարդութիւնները երիկամունքի, կոկորդի, ականջի, վզի գեղձերի և այդ պատճառաւ անկողնում պահել տուի մինչև 60 օր, չնայած երեխայի անընդհատ խնդիրքին՝ թոյլ տալ վերկենալ տեղերից։

II

*Բժշկութիւն.*—Առանձնայատուկ բժշկութիւն, ինչպէս բկացաւի դէմ կայ, ընդունւում է Մոզերի շիճուկը, որը գործադրւում է մանաւանդ հիւանդանոցներում. այդ արմատական միջոց չէ, քանի որ հետևանքն այնքան մեծ չէ, մանաւանդ որ այդ շիճուկը թանգ է։ Իսկ եթէ հիւանդութեան ընթացքում երեւան գայ բկացաւի բարդութիւն, այն ժամանակ հարկաւոր է հակադիֆտերիտային շիճուկ, որի ազդեցութիւնը շատ բարեյաջող է լինում։

Մնում են ախտանշանային միջոցներ (симптоматическое леченіе)։ Բայց ամենից յարմարն այն է, երբ հնար է բժշկին դիմել և հիւանդին ուղարկել հիւանդանոց, ուր հոգատարութիւնը կանոնաւոր կը լինի և տան միւս երեխանները զերծ կը մնան։ Եթէ այդ անկարելի է, այն ժամանակ իսկոյն պէտք է հրաւիրել բժիշկ, որը ցոյց կը տայ, թէ ինչ անել, որպէսզի թէ հիւանդը և թէ միւսներն անվտանգ մնան։

Իսկ մինչև բժշկի գալը պիտի հոգալ հիւանդի համար։

1. Պէտք է հիւանդի համար պատրաստել յարմար անկողին, դոշակը լցնել խոտով կամ յարդով, որովհետև կարելի է այրել և ոչնչացնել վարակը, իսկ եթէ հիւանդի տակին լինին մուշտակ, այն ժամանակ դժուար կը լինի ախտահանել և այդ կը դառնայ պատճառ և հիւանդութեան տարածման։

2. Հարկաւոր է, որ սենեակի օդը մաքուր և թարմ լինի, որ հիւանդի շնչառութիւնը հեշտ լինի, ուստի հարկաւոր է՝ սենեակի օդը փոխել, ամառը լուսամուտները բաց պահել, ձմեռը այնպէս անել, որ փչացած օդը դուրս հանուի սենեակի վառարանների միջոցով. բնակարանը մաքուր պէտք է պահել, լուացքի ջրեր, հագուստ և այլ աւելորդ բաներ պէտք է դուրս տանել։

3. Հիւանդին պահել մաքուր՝ փոխել նրա շապիկը, վարտիկը. մաքուր անկողնում և մաքուր սպիտակեղէնում հիւանդներն աւելի լաւ են զգում։

4. Եթէ երեխան տաքութեան մէջ է, պէտք է գլխի վրայ սառը ջրի մէջ թրջած և մզած երեսրբիչ կամ շոր դնել և շուտ շուտ փոխել։

5. Բերանը մաքուր պահել. փոքրերինը սրբել մաքուր շորով՝ թաթախելով եփ տուած ջրի մէջ, իսկ մեծերին ստիպել ողողել նոյն ջրով բերանը, աւելի լաւ է բորնի լուծուածքով։

6. Հիւանդին ի հարկէ տալ թեթև կերակուր՝ կաթ, թերխաշ ձու, բուլկի, իսկ ծարաւը յագեցնելու համար սառցրած թէյ կամ եփտուած ջուր լիմոնով կամ որևիցէ քաղցրաւենիքով։

Բայց որպէսզի վարակը չտարածուի, հարկաւոր է նախ և առաջ հիւանդին առանձնացնել առողջներից. ուստի և գերադասելի է հիւանդին տանել հիւանդանոց։ Եթէ ընտանիքում կայ քութէշով հիւանդ, միւս երեխաներին արգելել դպրոց յաճախելու, այլապէս նրանք կը տարածեն վարակը դպրոցում. Նոյնպէս ուրիշ տներ չգնալ և ուրիշներին տուն չընդունել։ Հարևանները և համագիւղացիք չպիտի վարակուած տներից վերցնեն՝ ոչ հագուստ, ոչ ուտելիք, որպէսզի չտարածեն վարակը։ Երբ երեխան առողջացաւ, պիտի ախտահանել նրա հագուստը, անկողինը և ինչ որ նրա բնակարանում կայ։ Երեխային լողացնել, մաքուր հագուստ հագցնել, անկողնի ներքնակի (тюфякъ) խոտը այրել և այլն, նմանապէս բոլոր այն իրեղէնները, որոնք շփուել են հիւանդին կամ եղել են բնակարանում, ենթարկել ախտահանման։ Այդ ամենը կատարելու համար աւելի յարմար է դիմել բժշկին։

Եթէ հիւանդ երեխան վախճանուել, չպիտի թոյլատրել երեխայոց կպչել հանգուցեալի դիակին, որպէսզի չվարակուեն. Նոյնպէս թոյլատրելի չի, որ հանգուցեալի հագուստեղէնը, վերմակը և այլն ընծայել ուրիշներին, այլապէս կարող է տարածուել վարակը։

Ես երկար կանգ առայ քութէշի վրայ, նախ՝ որովհետև Ներկայումս՝ թէ քաղաքում և թէ գիւղերում շատ է տարածուած և անթիւ զոհեր է տանում. երկրորդ՝ միւս ցանային հիւանդութիւններից աւելի վտանգաւոր է և երրորդ՝ մեր թէ քաղաքի և թէ մանաւանդ գիւղի ազգաբնակութիւնը շատ թերի ծանօթութիւն ունի այդ ախտի մասին, ուստի և տուժում է սաստկապէս։

*Բժ. Բ. Աղասարեան*

# ԱՅԼԵՒԱՅԼՔ

## ԽԱՌԱՏ ԿԱՆԱՅՔ

Անգլուհիներին է պատկանում պատիւը առաջին տղամարդկանց աշխատանքներ սկսելու, որոնցից ցարդ հեռու էին կենում. Նրանք պարապեցին ատաղձագործութեամբ և այն էլ ռազմաբեմում։ Նորերս Լոնդոնից Ֆրանսիա հասաւ առաջին խումբը 20 անգլուհիներ, որոնք պիտի զբաղուին անգլիացոց ճակատում հիւղեր (бараки) շինելով։

Զարին-Կրոս կայարանից մեկնելիս լոնդոնցիները խանդավառ մեծարանք ցոյց տուին սրանց։ Աշխատութեան օր որոշուած է 10 ժամ, առաւօտեան ժամի 8-ից, իսկ ռոճիկ ստանալու են 25—35 շելլինգ շաբաթական։ Այս առաջին կին-խառատներին հետևելու են շատ ուրիշները. այս մասնագիտութիւնն այժմ սովորում են 300—400 կին։ Երբ նրանցից հարցնում են, ինչու այդպիսի ծանր արհեստ են ընտրել, պատասխանում են, թէ որոշեցին հետևելու բելգուհիների և ֆրանսուհիների բարի օրինակին։ Աշակերտութեան ժամանակամիջոցը երկարատև չէ։ Սկզբում նրանց տալիս են միայն հասարակ գործիքներ, բայց հենց որ վարժւում են, տալիս են աւելի բարդ գործիքներ և աշխատութիւններ։ Նրանցից շատերը մինչև պատերազմը գիւղատնտեսական սարուկներ էին, կամ Լոնդոնում տնտեսուհիներ, դերձակուհիներ և այլն։

— Հայոց աշխարհի այս տառապալից օրերին, երբ տղամարդկանց թիւը պակասում է Ռուսաստանում, իսկ համարեա սպառուել է Տաճկահաստանում, ուստի ջանասէր հայ կինը պէտք է այլևս չքաշուի տղամարդկանց հնարաւոր աշխատանքների ձեռք զարկելուց մեր աշխարհի վերաշինութեան համար։

*Կայ*

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Տպարան Ն. Աղանեանի* Тип. Н. Аганьянца, Полицейская 7.



ՅԱՒԵԼՈՒԱԾ № 10

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

№ 6

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Կ. Հ. Բ. Ընկ. Ախալքալաքի ճիւղի վարչութեան ապաստարանի որբերի*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայրը | Ծնողք ունի՞ | Տարիքը | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|
| 1 | Նալբանդեան Գոհարիկ | ? | ? | 3 | |
| 2 | Մելոյեան Բլբուլ | Խոտ | ոչ | 3 | |
| 3 | Նալբանդեան Սիրանոյշ | ? | » | 4 | |
| 4 | Յակոբեան Սարայի | Խաս | » | 3 | |
| 5 | Դաւթեան Մարգարիտ | Գուտեմիր | » | 6 | |
| 6 | Վարդանեան Սառա | ? | » | 6 | |
| 7 | Տօնոյեան Աղբուտ | » | » | 6 | |
| 8 | Մխիթարեան Վիկտորիա | Խնուս | » | 6 | |
| 9 | Սողոմոնեան Սիրանոյշ | Ցրոնք | ? | 6 | |
| 10 | Յակովբեան Հեղինէ | Բուռնազ | ոչ | 6 | |
| 11 | Պետրոսեան Վիկտորիա | Ցրոնք | » | 7 | |
| 12 | Պետրոսեան Հեղինէ | Ղարս | » | 6 | |
| 13 | Գաչլեան Ալմաստ | Մոտկան | » | 6 | |
| 14 | Խուրշուդեան Մարիամ | Գեղաշէն | մայր | 7 | |
| 15 | Պետրոսեան Մարիամ | Տալւորիկ | հայր | 6 | |
| 16 | Պետրոսեան Խանում | Հաւատորկ | ? | 7 | |
| 17 | Պետրոսեան Ոսկի | Ղարս | ոչ | 6 | |
| 18 | Յարութիւնեան Հրաչեա | Բնդեղ | » | 6 | |
| 19 | Առաքելեան Լուսիկ | Բուռնազ | մայր | 7 | |
| 20 | Ղազարեան Աղաւնի | Օրկնոց | » | 7 | |
| 21 | Ռուքքիսեան Սիրանոյշ | Սասուն | ոչ | 7 | |
| 22 | Հարաթեան Անգին | Շնիար | » | 6 | |
| 23 | Յովհաննիսեան Սուսեր | Բլանուխ | " | 7 | |
| 24 | Մարտիրոսեան Արշալոյս | Գալի | հայր | 7 | |
| 25 | Օվիկեան Արուսեակ | Առինջ | ոչ | 7 | |
| 26 | Պետրոսեան Վարդանուշ | Գեղաշէն | մայր | 7 | |
| 27 | Յովհաննիսեան Մեմոնէ | Քրդագոմ | ոչ | 7 | |
| 28 | Գրիգորեան Անգարեա | Ցխաւ | » | 8 | |
| 29 | Պօղոսեան Մերտօ | » | » | 8 | |
| 30 | Յարութիւնեան Խանիկ | Հաւատոր | » | 8 | |
| 31 | Մուրադեան Բաշօ | Սասուն | մայր | 8 | |
| 32 | Պօղոսեան Սուսէ | Արբերեռ | ոչ | 9 | |
| 33 | Սարգսեան Ջարուհի | Ծղակ | " | 9 | |
| 34 | Յարութիւնեան Ջէյրան | » | » | 9 | |
| 35 | Սարգսեան Շուշանիկ | Սասուն | հայր | 9 | |
| 36 | Կոթողեան Փեփրոնէ | Խնուս | ոչ | 9 | |
| 37 | Առաքելեան Արուսեակ | Բուռնախ | » | 9 | |
| 38 | Էնգէյեան Մարիամ | Քրդագոմ | » | 9 | |
| 39 | Օհանեան Անահիտ | Օշուր Բռնաշ. | ? | 9 | |
| 40 | Հալդաթեան Մարիամ | Արուլբահար | ? | 9 | |
| 41 | Գէորգեան Սիրանոյշ | Օլթի | մայր | 10 | |
| 42 | Յարութիւնեան Մարիամ | Բնդըխն | ոչ | 9 | |
| 43 | Մարտիրոսեան Եղիսաբեթ | Հաւարորք | » | 10 | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 44 | Հայրապետեան Սաթենիկ | Թերջան | ոչ | 10 |
| 45 | Գաբրիէլեան Վարուժան | Սասուն | հայր | 10 |
| 46 | Գաբրիէլեան Վառէ | » | հայր | 10 |
| 47 | Աւետիսեան Խանում | » | ոչ | 10 |
| 48 | Մելքոնեան Խաթուն | » | » | 11 |
| 49 | Յարութիւնեան Հայկանոյշ | Հաւարորք | ? | 10 |
| 50 | Սեդրաքեան Սանամ | Խնուս | մայր | 10 |
| 51 | Նալբանդեան Վարդանոյշ | ? | հայր | 10 |
| 52 | Մեկրեան Լուսիկ | Խարատս | ? | 11 |
| 53 | Գալստեան Հռիփսիկ | Ղարս | մայր | 10 |
| 54 | Բոսոյեան Շողիկ | Լմլակ | ոչ | 11 |
| 55 | Մկրտչեան Ֆլորա | Առինջ | » | 11 |
| 56 | Ասատրեան Անգին | Սոխգոմ | ոչ | 11 |
| 57 | Մանուկեան Սիրանոյշ | Ցրոնք | ? | 10 |
| 58 | Յովսէփեան Աղաւնիկ | Ղարս | » | 11 |
| 59 | Դաւթեան Սալւի | » | մայր | 11 |
| 60 | Յակոբեան Նոյեմ | Խնուս | ? | 12 |
| 61 | Մարտիրոսեան Նոյեմ | Դունիկ | » | 12 |
| 62 | Սերոբեան Վարդուհի | » | » | 13 |
| 63 | Աւետիսեան Սիրանոյշ | Խնուս | » | 13 |
| 64 | Յարութիւնեան Ազնիւ | Խալչաուշ | » | 13 |
| 65 | Մեսրոպեան Թերեզ | Ունան | » | 13 |
| 66 | Ղազարեան Եղիսաբեթ | Գեղաշէն | հայր | 13 |
| 67 | Մուշեղեան Վերժին | Խարաչոր. | ոչ | 13 |
| 68 | Էլոյեան Սիրանոյշ | Արուլ Բոհար | » | 14 |
| 69 | Մուշեղեան Ազնիւ | Ցրոնք | » | 14 |
| 70 | Դաւթեան Նազենիկ | Խարս | ? | 14 |
| 71 | Սողոյեան Լուսիկ | Ցրոնք | ոչ | 14 |
| 72 | Եփրեմեան Հեղինէ | Ղարս | » | 14 |
| 73 | Սիմէոնեան Զարէլ | Դրմեռ | » | 14 |
| 74 | Յակոբեան Սիրանոյշ | Սոխգոմ | » | 13 |
| 75 | Գուլանեան Զարէլ | Խնուս | » | 13 |
| 76 | Մկրտչեան Մարիամ | Արուլ-Բոհար | » | 14 |
| 77 | Մարտիրոսեան Դեղձանիկ | Նորաշէն | » | 15 |
| 78 | Շուքուրեան Արեգնազան | Գիւլտեմիր | » | 16 |
| 79 | Նազարէթեան Հայկանոյշ | Օղրուր | » | 18 |
| 80 | Պօղոսեան Գուլալ | Ալվառինչ | » | 15 |
| 81 | Բաղդասարեան Հեղինէ | Ցափն | » | 17 |
| 82 | Գէորգեան Լուսիկ | Ցրոն | » | 17 |
| 83 | Մարգարեան Մարգարիտ | Դուման | » | 18 |
| 84 | Յովհաննիսեան Հարիաթ | » | » | |
| 85 | Մարտիրոսեան Ազատ | Հաւարոր | մայր | 3 |
| 86 | Ղուկասեան Հրանտ | Մառնիկ | ոչ | 3 |
| 87 | Յարութիւնեան Վարդան | Հաւարոր | » | 3 |
| 88 | Վարդանեան Խաչիկ | Սոխգոմ | » | 3 |
| 89 | Աւետիսեան Գարեգին | Ղարադլու | » | 3 |
| 90 | Մանուկեան Սամսոն | Ցրոն | » | 4 |
| 91 | Յովհաննիսեան Առաքել | Բլանուխ | » | 3 |
| 92 | Գրիգորեան Խաչիկ | Գրմուխ | » | 3 |
| 93 | Ռուբինեան Նորայր | Սասուն | » | 3 |
| 94 | Արրոյեան Միսաք | » | » | 3 |
| 95 | Նալբանդեան Մարտիրոս | ? | հայր | 5 |
| 96 | Սարգսեան Հայրապետ | Գիմիզ | » | 4 |
| 97 | Աբրահամեան Բարսեղ | Խանչալու | ոչ | 4 |
| 98 | Օհանեան Երուանդ | Օղրա | » | 4 |
| 99 | Վարդանեան Տիգրան | Ցրոն | մայր | 4 |
| 100 | Գասպարեան Խաչիկ | Սասուն | հայր | 4 |
| 101 | Մուրադեան Տիգրան | Փիլոն | » | 5 |
| 102 | Մուրադեան Արմենակ | Սասուն | » | 5 |
| 103 | Յովհաննիսեան Գրիգոր | Ղարս | ոչ | 5 |
| 104 | Սարգսեան Անրօն | Օղնակ | » | 5 |
| 105 | Զաքարեան Յեսու | Թիլա | » | 5 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 106 | Պետրոսեան Զաքար | Օլթի | ոչ | 5 |
| 107 | Յարութիւնեան Մուշեղ | Հաւարոր | հայր | 5 |
| 108 | Զաքարեան Ազատ | Կենիկ | մայր | 5 |
| 109 | Առաքելեան Աւետիս | Սասուն | հայր | 5 |
| 110 | Գաբրիէլեան Յակոբ | Սասուն | " | 5 |
| 111 | Կոստանեան Տիգրան | Տոմ | ոչ | 6 |
| 112 | Թովմասեան Արամ | » | » | 7 |
| 113 | Պետրոսեան Հուրիաթ | Ցրոն | » | 7 |
| 114 | Սեդրաքեան Արիստակէս | Ցրոն | » | 7 |
| 115 | Մուշեղեան Թորգոմ | Տոմ | » | 7 |
| 116 | Մխաքեան Քարամ | Խնուս | » | 7 |
| 117 | Մխիթարեան Յարութիւն | Մկրագոմ | » | 7 |
| 118 | Օվիկեան Ղազար | Թաթնա | " | 7 |
| 119 | Նալբանդեան Աբրահամ | ? | հայր | 8 |
| 120 | Սահակեան Արշակ | Թըլի | ոչ | 8 |
| 121 | Արշակեան Եղուարդ | Խնուս | " | 7 |
| 122 | Գերոյեան Սուրէն | Կուշամոր | հայր | 7 |
| 123 | Գալարեան Հրաչ | Ղարս | մայր | 8 |
| 124 | Եղիազարեան Անտոն | Ցրոն | մայր | 8 |
| 125 | Սարգսեան Զաւէն | Ղզլաղաջ | ոչ | 8 |
| 126 | Մարգարեան Խաչիկ | Ղարս | » | 8 |
| 127 | Յովհաննիսեան Զաւէն | Գոմս | » | 8 |
| 128 | Յովհաննիսեան Ազատ | Ղզլաղաջ | » | 8 |
| 129 | Վահանեան Տիգրան | Բերդագոմ | » | 8 |
| 130 | Յակոբեան Զոհրաբ | Բերդագոմ | " | 8 |
| 131 | Աւետիսեան Ղազար | Բերդագոմ | » | 9 |
| 132 | Թորոսեան Լեոն | » | " | 9 |
| 133 | Յակոբեան Գեղամ | Ունան | հայր | 8 |
| 134 | Մխիթարեան Աստուածատուր | Ցրոն | ոչ | 8 |
| 135 | Վելոյեան Թերօ | " | » | 8 |
| 136 | Արշակեան Անդրանիկ | Խնուս | » | 9 |
| 137 | Պօղոսեան Կարապետ | Սասուն | » | 9 |
| 138 | Մելքոնեան Աղիղ | Թաթնա | » | 9 |
| 139 | Յովհաննիսեան Քերովբէ | Արտէրտ | » | 9 |
| 140 | Ռուբինեան Նահապետ | Սասուն | › | 9 |
| 141 | Գրիգորեան Արմենակ | Գիրմաւ | " | 8 |
| 142 | Գուլանեան Գեղամ | Խնուս | › | 9 |
| 143 | Մեսրովբեան Արշակ | Խաս գիւղ | » | 9 |
| 144 | Աւոյեան Հայրապետ | Քրդագոմ | » | 9 |
| 145 | Ալէքսանեան Էփրանոս | Արանջ | » | 10 |
| 146 | Ապատեան Դաւիթ | Խաս գիւղ | » | 9 |
| 147 | Մխաքեան Գեղամ | » | ոչ | 9 |
| 148 | Տոնոյեան Վահան | Ընկուզիկ | » | 8 |
| 149 | Տոնոյեան Սեդրաք | » | » | 10 |
| 150 | Յակոբեան Յարութիւն | Ղարդոս | » | 10 |
| 151 | Մելիքեան Մուշեղ | Մուշ | » | 10 |
| 152 | Սեդրաքեան Մկրտիչ | Արաջ | » | 10 |
| 153 | Պետրոսեան Արամ | Ցրոն | » | 10 |
| 154 | Մկրտչեան Նիկողայոս | Ամզաջիչ | » | 10 |
| 155 | Քիդանեան Գուրգէն | Ղարս | մայր | 10 |
| 156 | Երեմեան Արօ | Թալըւան | ոչ | 11 |
| 157 | Տօնապետեան Բենեամին | Հոշրի | » | 10 |
| 158 | Գրիգորեան Սարգիս | Ունան | » | 10 |
| 159 | Մելքոնեան Հայկ | Արդաւան | » | 10 |
| 160 | Մովսէսեան Պօղոս | Խնուս | մայր | 10 |
| 161 | Վարդանեան Սմբատ | ? | ? | 10 |
| 162 | Աւետիսեան Աղաջան | Ղարս | » | 10 |
| 163 | Գաբրիէլեան Մնացական | Համզշեղ | ոչ | 11 |
| 164 | Սարոյեան Լեոն | Հաւադոր | » | 11 |
| 165 | Գասպարեան Կարապետ | Հոներ | մայր | 11 |
| 166 | Մուշեղեան Սենեքերիմ | Խարաչոր. | ոչ | 11 |
| 167 | Սերովբեան Հլղաթ | Խաս | » | 11 |
| 168 | Մանուկեան Զաքար | Բազդան | » | 11 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 169 | Օհաննեան Երեմիա | ? | ոչ | 10 |
| 170 | Եղիկեան Սեդրաք | Ցրոն | » | 10 |
| 171 | Ոզգոյեան Խոսրով | » | » | 11 |
| 172 | Գէորգեան Միսաք | Ցրոն | » | 11 |
| 173 | Մոդսոյեան Մարգար | Օշրի | " | 11 |
| 174 | Դանիէլեան Գրիգոր | Մկրագոմ | » | 10 |
| 175 | Փողոսեան Արփօ | Խաս | » | 11 |
| 176 | Մովսիսեան Անրօն | Ղարսոս | » | 11 |
| 177 | Սարգսեան Դաւիթ | Քրդագոմ | » | 11 |
| 178 | Սեդրաքեան Գէորգ | Տոհոմ | " | 11 |
| 179 | Գասպարեան Յովհաննէս | Արւարինջ | » | 11 |
| 180 | Գրիգորեան Խաչիկ | Արգաւան | " | 11 |
| 181 | Օհաննեան Մխիթար | Մկրագոմ | " | 11 |
| 182 | Մարտիրոսեան Անրօն | Արգաւ | » | 11 |
| 183 | Գուրգէնեան Վարդան | Ղարս | » | 11 |
| 184 | Մխիթարեան Յակոբ | Արաղ | » | 12 |
| 185 | Ղազարեան Աստուածատուր | » | » | 11 |
| 186 | Նազարեան Ղուկաս | Ղուր | " | 11 |
| 187 | Եքոյեան Առաքել | Ղոմխաչ | » | 10 |
| 188 | Աղաջանեան Արամ | Անգուր | » | 11 |
| 189 | Գասպարեան Ռուբէն | Արնջան | " | 11 |
| 190 | Կարապետեան Ռուբէն | » | » | 11 |
| 191 | Արէթեան Յովհաննէս | Առասինջ | հայր | 11 |
| 192 | Տոնոյեան Անդրանիկ | Խաս | ոչ | 11 |
| 193 | Գուլանեան Անդրանիկ | Խնուս | մայր | 11 |
| 194 | Մարտիրոսեան Աստուածատուր | Ցրոն | ոչ | 11 |
| 195 | Յովհաննիսեան Հմայեակ | Ունգալ | » | 13 |
| 196 | Զաքարեան Աստուածատուր | Մուշ | » | 13 |
| 197 | Տիրանեան Ռուբէն | » | » | 13 |
| 198 | Գասպարեան Եսաւ | Բոնաշէն | » | 12 |
| 199 | Մկրտչեան Մեսրոպ | Նորաշէն | » | 12 |
| 200 | Նարոյեան Տոնօ | Խարտուն | » | 13 |
| 201 | Մուրադեան Առաքել | Հիրիշր | » | 13 |
| 202 | Մանուկեան Մուշեղ | Ղարս | » | 12 |
| 203 | Այվազեան Միքայէլ | Հրխլան | » | 12 |
| 204 | Խաչատրեան Միհրան | Արինջ | " | 13 |
| 205 | Կոստանեան Մկրտիչ | Օղանք | " | 14 |
| 206 | Խաչիկեան Մուշեղ | Սբխգոմ | » | 14 |
| 207 | Թորոսեան Թովմաս | ? | հայր | 13 |
| 208 | Յակոբեան Ալէքսան | Արարինջ | ոչ | 13 |
| 209 | Պետրոսեան Միսաք | Ցրոն | » | 14 |
| 210 | Մկրտչեան Սարգիս | Բուլանուղ | » | 13 |
| 211 | Յովհաննիսեան Եղօ | Արթեր | » | 14 |
| 212 | Կարապետեան Տօնապետ | » | » | 13 |
| 213 | Գէորգեան Սողոմոն | ? | » | 14 |
| 214 | Աստուածատուրեան Ռուբէն | Քրդագոմ | » | 14 |
| 215 | Մխիթարեան Հրանտ | Բերդակ | » | 13 |
| 216 | Գասպարեան Մեսրոպ | Ցրոն | « | 13 |
| 217 | Սեդրաքեան Արամ | » | » | 13 |
| 218 | Յովսէփեան Հասրաթ | » | » | 14 |
| 219 | Մանուկեան Հմայեակ | » | » | 14 |
| 220 | Խաչատրեան Արամ | » | » | 14 |
| 221 | Մարգարեան Եսաւ | Քրդագոմ | » | 14 |
| 222 | Հլղաթեան Մեսրոպ | Դրմեռ | » | 14 |
| 223 | Պետրոսեան Փողոս | Կեխլան | » | 14 |
| 224 | Մանուկեան Համբարձում | Խնուս | " | 14 |
| 225 | Խաչատրեան Ադրէաս | Գւոր | մայր | 14 |
| 226 | Մկրոյեան Ասատուր | Խարթոս | ոչ | 14 |
| 227 | Պետրոսեան Յովսէփ | Արինջ | » | 15 |
| 228 | Գրիգորեան Յարութիւն | Գոթեր | » | 15 |
| 229 | Մալոյեան Արտաշէս | Գոմաձոր | » | 15 |
| 230 | Սերովբեան Յովսէփ | Ունան | » | 15 |